ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՂԹ.

ԴԿՏՐ. Պ. ԽԱՐԱՆԻՍ

# ՀԱՅԵՐԸ ԲԻԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1966

P. CHARANIS, PH. D.
PROFESSOR OF HISTORY, RUTGERS UNIVERSITY

# THE ARMENIANS IN THE BYZANTINE EMPIRE

TRANSLATED
BY
HAIG BERBERIAN

WIEN
MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI
1966

PRINTED IN AUSTRIA

ԴԿՏՐ. Պ. ԽԱՐԱՆԻՍ

# ՀԱՅԵՐԸ ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ

ՎԻԷՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1966



ԱՐՏԱՏՊՈՒԹԻՒՆ

# “ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ„Է

1964, էջ 45—58, 191—206, 351—364, 509—526 եւ 1965, էջ 85—100 եւ Յաւելուած մը:



## ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Վերջին տասնամեակներուն ընթացքին, Բիւզանդական կայսրութեան որոշ շրջաններուն կամ դերդաստաններուն մասին հրատարակուած բազմաթիւ ուսումնասիրութիւններ, որոնց մէջ մանաւորապէս պէտք է յիշել հանգուցեալ Նիկողայոս Ադոնցի աշխատութիւնները, ուշադրութիւն հրաւիրեցին բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց դերին վրայ: Փրոֆ. Խարանիսի այս գիրքը*, սակայն, առաջինն է որուն մէջ այս խնդիրը քննութեան առարկայ եղած է իր զանազան երեւոյթներով եւ երկարատեւ շրջանի մը մէջ, Յուստինիանոսի իշխանութենէն մինչեւ Մանազկերտի աղետալի ճակատամարտը, երբ բիւզանդական կայսրութիւնը կորսընցուց Հայաստանը եւ Փոքր Ասիոյ մեծագոյն մասը: Հեղինակը խղճամիտ ուսումնասիրութեամբ մը պարզած է այն փոփոխութիւնները որոնք տեղի ունեցան Կայսրութեան ցեղային կազմութեան մէջ ստուարաթիւ Հայերու գաղթերուն հետեւանքով: Այս Հայերէն ոմանք բռնի տեղահանուած եւ բնակեցուցած էին Բիւզանդական կայսրութեան*

* P. Charanis, *The Armenians in the Byzantine Empire*. (Calouste Gulbenkian Foundation Armenian Library). Distributors Livraria Bertrand, Lisboa, Portugal, 63 pages in 8º.

*ասխական եւ եւրոպական սահմաններուն մէջ զանազան տեղեր, իսկ ուրիշներ առաւել կամ նուազ ինքնակամօրէն եկած էին փախչելով արաբական տիրապետութենէն: Փրոֆ. Խարանիս ցոյց կու տայ անոնց նպաստը Բիւզանդիոնի զինուորական ուժին, թէ՛ իբրեւ բանակին մէջ զինուորագրուած ռազմիկներ, կազմելով երբեմն բանակին տիրական տարրը, ինչպէս նաեւ իբրեւ նշանաւոր զօրավարներ: Իններորդէն մինչեւ տասնըմէկերորդ դար, մեծամասնութեամբ հայկական ծագում ունէին այն զօրավարները որ բանակները առաջնորդեցին դէպի յաղթանակ եւ նպաստեցին Բիւզանդիոնի մեծութեան — կայսրեր, ինչպէս Վասիլ Ա., Ռոմանոս Լեկապենոս, Նիկեփորոս Փոկաս, Յովհաննէս Զմշկիկ եւ Վասիլ Բ, կամ նշանաւոր զօրավարներ, ինչպէս Պետրոնաս, Յովհաննէս Կուրկուաս (կամ Գուրգէն):*

*Փրոֆ. Խարանիս կը պարզէ նաեւ այն կարկառուն դերը զոր Հայերը իններորդ դարուն խաղացին Բիւզանդիոնի մտաւորական կեանքին մէջ, երբ Վարդաս կազմակերպեց Կոստանդնուպոլսոյ համալսարանը Մագնաւրայի պալատին մէջ եւ անոր գլուխը դրաւ Լեւոն Իմաստասէրը: Անոր երկու հռչակաւոր դասախօսները՝ Փոտ եւ Յովհաննէս Քերական՝ մասամբ կամ ամբողջովին հայկական ծագում ունէին: Շատ հաւանական է որ Հայերը Բիւզանդիոն կ'երթային իբրեւ ուսանող, ինչպէս շատ աւելի առաջ,*

չորրորդ դարուն, Աթէնք կ'երթային աշակերտելու Պրոյերեսիոս հայ հռետորին, զոր Սոզոմենոս կը կոչէ իր ժամանակին ամէնէն հռչակաւոր սոփեստէսը եւ որուն արձանը կանգնած էին Հռոմայեցիները «Հռոմ, թագաւորներու դշխոն, ճարտասանութեան արքային» արձանագրութեամբ, ինչպէս կը վկայէ իր աշակերտը եւ կենսագիրը՝ Եւնապիոս:

Առաջնակարգ անձնաւորութիւններէն ոմանք, որոնց ծագումը խղճամտօրէն ստուգած է Փրոֆ. Խարանիս, Հայաստանէն նոր եկած էին. ուրիշներ երկար ատենէ ի վեր կ'ապրէին բիւզանդական սահմաններուն մէջ եւ բոլորովին հելլենականացած էին: Բայց այս վերջինները սերունդէ սերունդ կը պահէին իրենց հայկական անունները, ինչ որ բացայայտօրէն ցոյց կու տայ թէ չէին մոռցած իրենց ծագումը, ոչ ալ կ'ուզէին որ Բիւզանդացիները մոռնան թէ իրենք կը սերէին հին եւ ազնուական գերդաստաններէ: Իրականութեան մէջ, գլխաւորաբար այս անուններուն շնորհիւ է որ մերօրեայ գիտունները կրցած են ստուգել ցեղային ծագումները, զոր բիւզանդացի պատմագիրներն ու քրոնիկագիրները որոշ կերպով չեն յիշած միշտ:

Հելլենացման աստիճանը բնականաբար կը տարբերէր իւրաքանչիւր պարագայի մէջ եւ դրական փաստեր ունինք թէ բարձրաստիճան պաշտօնատարներէն առնուազն ոմանք

կը չարունակէին խօսիլ իրենց մայրենի լեզուն։ Անոնցմէ մէկն էր պրոտոսպաթարիոս (protospatharios) Յովհաննէս, որ հայերէն աւետարան մը օրինակել տուած է։ Պատուիրատուն, որուն մասին որոշ տեղեկութիւններ չունինք, ինքզինքը կը կոչէ Թէոդորական դուքսին պրոքսիմոսը (proximos), որ պէտք է եղած ըլլայ Վասիլ Բ.ի զօրավարը եւ Փիլիպպոպոլիսի կուսակալը ըստ բիւզանդական աղբիւրներուն։ Ձեռագիրը կը գտնուի Վենետիկի Մխիթարեաններուն մատենադարանը (թիւ 887), գրուած եւ լուսազարդուած 1007ին Ադրիանուպոլսոյ մէջ, ինչ որ ցոյց կու տայ թէ ոչ միայն պրոտոսպաթարիոսը հայերէն գիտէր, այլ եւ թէ այդ քաղաքին մէջ կ՚ապրէր կարող հայ դրիչ մը, որ ի վիճակի էր պատուիրատուին փափաքը իրագործելու։

Խօսելով հելլենականացած բարձրաստիճան հայ պաշտօնատարներու մասին, Փրոֆ. Խարանիս կ՚աւելցնէ. «Այսու հանդերձ, կարելի է խորհիլ թէ արդեօք անոնց հելլենականացումը կրած չէ՞ր իրենց ցեղային ծագումին ազդեցութիւնը, թէ արդեօք ձուլուելով չե՞ն փոխած այն մշակոյթը որ գիրենք ձուլած էր»։ Նման հարցում մը կարելի է ընել գեղարուեստական զարգացման ինչ ինչ երեւոյթներուն մասին։ Պարզ պատահականութի՞ւն է որ Բիւզանդիոնի գարդարուեստին մէջ արեւելեան տարրերը կը տիրապետեն իններորդ եւ տաս-

ներքին դարերուն, այսինքն ճիշդ այն շրջանին ուր հայկական ծագումով մարդիկ իրականութեան մէջ կայսրութեան ճակատագիրը կը վարէին եւ ուր, միեւնոյն ատեն, կ'ընդարձակուէին կայսրութեան սահմանները եւ Հայերու նոր խուժում մը տեղի կ'ունենար: Անտարակոյս արուեստագէտներ եւ արհեստաւորներ կային այս նոր գաղթականներուն մէջ եւ կը շարունակէին իրենց սեպհական զբաղումները: Այսպէս, հայկական գործեր յիշուած են այն աւարին մէջ զոր Պուլկարներուն Թագաւորը՝ Քրում իր երկիրը փոխադրեց, երբ բիւզանդական բանակները պարտուեցան եւ Նիկեփորոս կայսրն ալ սպաննուեցաւ:

Բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց դերին այս խղճամիտ եւ անկողմնակալ գնահատումին մէջ Փրոֆ. Խարանիս հիմը դրած է աւելի նոր հետազօտութեանց եւ մեզի տուած է բիւզանդական ազգագրութեան մասին իր բազմաթիւ մեծարժէք ուսումնասիրութիւններուն ամէնէն կարեւորը:

Մայիս, 1963

ՍԻՐԱՐՓԻ ՏԷՐ ՆԵՐՍԷՍԵԱՆ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Բիւզանդական կայսրութիւնը, բնականաբար, Հռոմէական կայսրութեան շարունակութիւնն էր: Արեւմտեան նահանգներուն կորուստին եւ 476ին Արեւմուտքի մէջ կայսերական տիտղոսին բարձման հետեւանքով, Հռոմէական կայսրութիւնը, աշխարհագրական տեսակէտով, իրականութեան մէջ սահմանափակուեցաւ միայն Արեւելքի եւ Պալքաններուն մէջ: Այս սահմաններուն մէջ, ի բաց առեալ Պալքանեան թերակղզիին բոլորովին ներքին մասերը, երկար ատենէ ի վեր տիրական մշակոյթը հելլենականութիւնը եղած էր: Բայց կայսրութեան քաղաքակրթութեան կարեւոր յատկանիշները Հռոմէական մնացած էին իրենց խորքին մէջ: Այս պարագան ճիշտ է մանաւանդ իրաւական դրութեան, վարչական մեքենային եւ բանակին կազմակերպութեան տեսակէտով: Հռոմէական կայսրութեան ուրիշ մէկ յատկանիշն ալ, որ շարունակեց իր գոյութիւնը պահել արեւմտեան նահանգներուն կորուստէն ետք, անոր բազմազգային նկարագիրն էր: Աւելի ետքերը, եօթներորդ դարուն, երբ Կայսրութիւնը կորսնցուց իր արեւելեան նահանգներէն ոմանք, մասնաւորաբար Ե-

*գլխաւոր, Պաղեստինը, Սուրիան եւ Հայաստանը, աւելի յունական երեւոյթ մը ստացաւ քան նախապէս, բայց իբրեւ մեծ պետութիւն, իր երկարատեւ պատմութեան մինչեւ վերջաւորութիւնը, երբեք չկորսնցուց իր բազմազգեան նկարագիրը: Իր քաղաքակրթութիւնը, բնականաբար, հիմնովին յունական էր, եւ իր բնակչութեան յունախօսները անտարակոյս գերակշիռ էր, բայց այս բնակչութեան մաս կը կազմէին զանազան ժողովուրդներ, որոնցմէ ոմանք շատ կարեւոր էին,*

*Յաջորդ էջերուն նպատակն է քննել այն դերը զոր Կայսրութեան պատմութեան մէջ կատարած է այս ժողովուրդներէն մէկը՝ Հայերը: Ներկայ աշխատութիւնը նախապէս հրատարակուած է* Byzantinoslavica*ի* 22*րդ հատորին* (1961) *մէջ: Քանի մը բարեփոխութիւններով եւ շնորհիւ Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութեան (Լիզպոն), այժմ կը հրատարակուի հատորի ձեւով:*

PETER CHARANIS
Rutgers University
New Brunswick, N. J

Ա.

Միքայէլ Բ. (828—829) կայսեր դէմ Թոմաս Սլաւոնացիի ապստամբութեան (820—823) պատմութեան մէջ Գենեսիոս բիւզանդացի պատմագիրը կը թուէ անունները այն զանազան ժողովուրդներուն որոնցմէ բաղկացած էր ապստամբին բանակը։ Այս ժողովուրդներն են Սարակինոսները, Հնդիկները, Եգիպտացիները, Ասորեստանցիները, Մարերը, Աբասգները (Ափխազ, Հ. Գ.), Զիքերը (Zich), Վանդալները, Գետերը (Getai), Խալդերը, Հայերը, պաւղիկեան եւ աթինգանեան աղանդներուն հետեւորդները[1]։ Այս ժողովուրդներէն ոմանք քաջածանօթ են։ Ուրիշներուն ինքնութիւնը ճշտելու համար կատարուած ջանքերը յաջողութեամբ չեն պսակուած[2]։ Բայց ամէն պարագայի մէջ բիւզանդացի պատմագրին կողմէ անոնց թուումը բացայայտօրէն կը պարզէ բիւզանդական կայսրութեան բազմազգային նկարագիրը։ Այսպէս էր կացութիւնը իններորդ

---

[1] Genesius, *Historia*. Bonn, 1834, 33.

[2] A. A. Vasiliev — H. Grégoire, *Byzance et les Arabes*, I. Bruxelles, 1935, 31, n. 2., cf. F. Hirsch, *Byzantinische Studien*. Leipzig, 1876, 131.

դարուն, որ տարբեր չէր նախընթաց շրջանին եւ տարբեր պիտի չըլլար յաջորդ շրջանին կացութենէն: Բիւզանդական կայսրութիւնը, իր երկարատեւ պատմութեան մէջ, երբեք իրականօրէն ազգային պետութիւն մը չէ եղած ազգայնօրէն համասեռ բնակչութեամբ:

Բիւզանդական կայսրութեան զանազան ցեղային խմբաւորումներուն մէջ, Հայերը ամէնէն հզօր խումբերէն մէկը կը կազմէին: Վեցերորդ դարուն վերջը, բիւզանդական կայսրութիւնը կը տիրէր Հայաստանի մեծագոյն մասին: Եօթներորդ դարուն դէպքերը, մասնաւորաբար Արաբներուն հզօրացումը զայն զրկեցին այս տիրապետութենէն, բայց կայսրութեան կը մնային քանի մը հայախօս շրջաններ: Երբ իններորդ դարուն վերջերը, Կայսրութիւնը սկսաւ ընդարձակուիլ, այս շրջաններուն թիւն ալ աւելցաւ: Տասնըմէկերորդ դարուն կէսին, Հայաստան ամբողջովին Բիւզանդիոնի ձեռքն էր, թէեւ քիչ ետք Սելճուքեան Թուրքերը զայն գրաւեցին վերջնականապէս:

Բիւզանդական կայսրութեան մէջ հայկական տարրին գլխաւոր աղբիւրը, բնականաբար, անոր ենթակայ հայախօս սահմաններն էին: Այսպէս ութերորդ դարուն երբ Հայաստան ամբողջովին Արաբներուն ձեռքն էր, Կայսրութեան ենթակայ բնիկ հայ ժողովուրդը շատ մեծ թիւ մը չէր կազմեր, բայց տասնըմէկերորդ դարուն երբ Հայաստան ամ-

բողջովին գրեթէ կցուած էր Կայսրութեան, Հայերը ստուարաթիւ էին: Բայց Բիւզանդական կայսրութեան մէջ հայկական տարրը միայն բուն հայկական սահմաններուն մէջ չէր որ կ'ապրէր, այլ Կայսրութեան ուրիշ մասերուն մէջ ալ:

Բազմաթիւ Հայեր Բիւզանդիոն եկան նոյն իսկ երբ Հայաստան օտար լուծի տակ էր: Երբեմն իբրեւ բախտախնդիրներ, բայց աւելի յաճախ ապաստան գտնելու համար: Այսպէս, 571ին, Պարսից դէմ անյաջող ապստամբութենէ մը ետք, բազմաթիւ հայ ազնուականներ, Վարդան Մամիկոնեանի գլխաւորութեամբ, Հայոց կաթողիկոսին եւ քանի մը եպիսկոպոսներու հետ Պոլիս փախան[3]: Վարդան եւ իր ընկերները Բիւզանդիոնի զինուորական ծառայութեան մէջ մտան. միւսները կը թուին Պերկամա հաստատուած ըլլալ, ուր ծանօթ է թէ եօթներորդ դարուն հայ գաղութ մը կար: Այս գաղութին կը պատկանէր Վարդան (Bardanes), որ Փիլիպպիկոս անունով կայսերական գահը բարձրացաւ 711էն մինչեւ 713[4]:

Կրօնական այն խմորումը, որ, եօթնե-

[3] E. W. Brooks, *Iohannes Ephesini historiae ecclesiasticae pars tertia*, CSCO., Louvain, 1936, 61—62 (English transl., R. Payne Smith. Oxford, 1960, 125—126); Teophanes, *Chronographia*, ed. C. de Boor, I. Leipzig, 1883, 245.

[4] H. Gelzer, *Pergamon unter Byzantinern und Osmanen*. (Abh. d. königl.-preuss. Akademie der Wissenschaften), Berlin, 1903, 42 f.

*բորդ դարուն, Հայաստանի մէջ ծնունդ առաւ պաւղիկեան շարժումին, պատճառ եղաւ որ ուրիշ Հայեր ալ բիւզանդական կայսրութիւնը գան: Հայ պաւղիկեանները, որոնք տեղահանուեցան 662էն առեն մը առաջ, Կայսրութեան մէջ հաստատուեցան, մասնաւորաբար պոնտական սահմաններուն այն շրջանին մէջ ուր Իրիսը* (Եէշիլ Ըրմագ · Հ · Պ ·) *եւ Գայլ գետը* (Քելքիտ · Հ · Պ ·) *կը միանան: Ասոնց բնակավայրը կը տարածուէր գրեթէ մինչեւ Նիկոպոլիս (Էնտերես) եւ Նէոկեսարիա (Նիքսար)*[5]*: Այս շրջաններուն մէջ հոծ հայ բնակչութիւն մը գոյութիւն ունէր արդէն: Օրինակի համար, Ստրաբոն Կոմանան կը յիշէ իբրեւ Հայոց շուկան*[6]*:*

*Հայաստանի արաբական գրաւումին պատճառած դժգոհութիւնը ուրիշ Հայեր ալ մղեց ապաստան փնտռել Կայսրութեան սահմաններուն մէջ: Այսպէս շուրջ 700ին, նախարարներ, իրենց հետեւորդներով, բիւզանդական կայսրութիւնը ապաստանեցան եւ կայսրը զանոնք բնակեցուց պոնտական սահմանագլուխին վրայ: Ասոնցմէ ոմանք, յետոյ, Հայաստան վերադարձան, բայց ուրիշներ*

[5] H. Grégoire, *Précisious geógraphiques et chronologiques sur les Pauliciens.* Académie royale de Belgique: Bulletin de la Classe des Lettres et des Sciences morales et politiques, 5ème sér., 33 (Bruxelles, 1947), 294 f., 298 f.: S. Runciman, *The Medieval Manichee*, Cambridge, 1947, 34.

[6] Strabo, 12. 3. 36.

մնացին[7]: Ուրիշ նախարարներ, բոլորովին լքելով Հայաստանի իրենց սեպհականութիւնները, բիւզանդական կայսրութիւնը փախան Կոստանդին Ե. Կոպրոնիմոսի իշխանութեան օրով[8]: Ուրիշներ ալ եկան չուրջ 790ին: Կը թուի թէ անոնց թիւը 12,000ի կը հասնէր եւ իրենց ընկերացած էին իրենց կիները, զաւակները, հետեւորդները եւ այրուձին: Կայսրը սիրով ընդունեցաւ զանոնք եւ անոնց յատկացուց բարեբեր հողեր, ուր հաստատուեցան[9], բայց չէ բացուած թէ հողերը ո՛ւր կը գտնուէին: Ինչպէս իրենց տիտղոսներէն կը հետեւի, այս ապաստանեալները կը պատկանէին հայկական ազնուականութեան, որոնք երբեմն կը քննադատուէին թէ երկրէն կը փախչէին եւ աղքատները կը ձգէին Արաբներուն լուծին տակ[10]: Այն խմբական գաղթերը, որ եօթներորդ եւ ութերորդ դարերուն սկսան, կը թուին շարունակած ըլլալ իններորդ դարուն ալ, բայց Հայերը անհա-

---

7 Ghevond, *Histoire des guerres et des conquêtes des Arabes en Arménie*, tr. from Armenian by G. V. Chahnazarian, Paris, 1856, 22, 33—34; cf. J. Laurent, *L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquête arabe jusqu'en 886*. Paris, 1919, 184, n. 4; J. Muyldermans, *La domination arabe en Arménie*..., Paris, 1927, 98—99.

8 Ghevond, 129.

9 Ibid., 162.

10 Stephen (Asoghik) of Taron, *Histoire universelle* (1e partie), tr. from Armenian by G. Dulaurier, Paris, 1883), 162.

տապէս չարունակեցին բիւզանդական կայսրութիւնը դալ բախտ փնտռելու համար:

Սակայն Հայերը միշտ կամաւորապէս չէկան: Երբեմն բռնի կը տեղահանուէին իրենց տեղերէն եւ կը փոխադրուէին կայսրութեան ուրիշ շրջանները: Յուստինիանոս արդէն այս քաղաքականութիւնը կիրարկած էր, բայց տեղահանութեան ենթարկուածներուն թիւը փոքր էր, թերեւս միայն քանի մը ընտանիք[11]: Լայնածաւալ տեղահանութիւնները տեղի ունեցան Տիբերիոս եւ Մաւրիկ կայսրերուն օրով: 578ին, 10,000 Հայ իրենց բնակավայրերէն հանուեցան եւ Կիպրոս կղզին փոխադրուեցան: «Այսպէս, կը գրէ Եւագր, նախապէս անմշակ հողերը ամէն տեղ մշակուեցան: Անոնցմէ բազմաթիւ բանակներ կազմուեցան, որոնք վճռականութեամբ եւ քաջարար կռուեցան ուրիշ ազգերու դէմ: Նոյն ատեն, ամէն ընտանիք բազմաթիւ սպասաւորներ ունէր, որովհետեւ ստրուկները շատ աժան կը ծախուէին[12]»:

---

[11] Procopius, *De bello Gothico*, III, 32, 7; cf. R. Grousset, *Histoire de l'Arménie des origines à 1071*. Paris, 1947, 242. Groussetի աղբիւրները չեն հաստատեր իր այն հաւաստումը թէ Յուստինիանոս բազմաթիւ Հայեր փոխադրած է Թրակիա:

[12] Evagrius Scholasticus, *Ecclesiastical History*, ed. J. Bidez and L. Parmentier. London, 1898, 215, թարգմանութիւնը կատարուած է այն անգլիական versionէն, որ հրատարակուած է Bohr's Ecclesiastical Library ի մէջ՝ Theodoret and Evagrius. *History of the Church*. London, 1854, 444.





Տեղահանութեան աւելի լայն ծրագիր մը յղացաւ Մաւրիկ եւ մասամբ գործադրեց: Ըստ Մաւրիկի, որ կրնայ ծագումով Հայ եղած ըլլալ, թէեւ այս պարագան չատ տարակուսելի է [13], Հայերը ծայր աստիճան անկարգ էին իրենց հայրենիքին մէջ: Մաւրիկ ծրագրեց բոլոր հայ իշխանները եւ իրենց հետեւորդները տեղահան ընել, բայց այս ծրագիրը կը կարօտէր Պարսից թագաւորին գործակցութեան: Ըստ Սեբէոսի, կայսրը հետեւեալը գրեց. «Ազգ մի խոտոր եւ անհնազանդ են. կան ի միջի մերում եւ պղտորեն: Բայց եկ, ես զիմս ժողովեմ եւ ի Թրակէ գումարեմ, եւ դու զքոյդ ժողովէ եւ հրամայէ յԱրեւելս տանել: Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին, եւ եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն, եւ մեք կեցցուք խաղաղութեամբ: Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին մեզ հանգիստ ոչ լինի»: Սեբէոս կը չարունակէ պատմել թէ երկու վեհապետները համաձայնեցան այս ծրագիրը գործադրել, բայց ըստ երեւոյթին, Պարսիկները չգործակցեցան, որովհետեւ երբ բիւզանդական կայսրը հարկ եղած հրամանները արձակեց եւ անոնց գործադրութիւնը խստիւ

---

[13] N. Adontz ջանացած է ապացուցանել Մաւրիկի հայկական ծագումը (*Les légendes de Maurice et de Constantin V, empereurs de Byzance.* (Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales, 2. Bruxelles. 1934 1—12), բայց տես P. Goubert, *Byzance avant l'Islam*, I. Paris, 1951, 34—41.

պահանջեց, բազմաթիւ Հայեր փախան Պարսկաստան[14]: Սակայն Բիւզանդացիները տեղահանութիւնը կատարեցին, թէեւ մասամբ միայն: Այս տեղափոխութեան իրական պատճառը, անտարակոյս, այն էր որ Մաւրիկ Հայերուն պէտք ունէր զանոնք իբրեւ զինուոր գործածելու համար Թրակիոյ մէջ:

Ութերորդ դարուն, Բիւզանդական կայսրութեան մէջ, մասնաւորաբար Թրակիա, Հայոց փոխադրութեան մասին ուրիշ վկայութիւններ ալ կան: Կոստանդին Ե. Կոպրոնիմոսի օրով, բիւզանդական բանակները հազարաւոր Հայեր եւ միաբնակ Ասորիներ հաւաքեցին Գերմանիկէի (Մարաշ), Մելիտինէի եւ Էրզրումի շրջանին մէջ իրենց կատարած ասպատակութեանց ատեն եւ զանոնք փոխադրեցին Թրակիա[15]: Ուրիշներ, նոյնպէս Էրզրումի շրջականերէն, հաստատուեցան արեւելեան սահմանագլուխին երկայնքը: Ասոնք, սակայն, հետագային բռնուեցան

---

[14] Sebeos, *Histoire d'Héraclius*, tr. from Armenian by F. Macler. Paris, 1904, 30—31 = Հ. Մալխասեան, 49: Cf. F. Dölger, *Regesten der Kaiserurkunden des oströmischen Reiches*, I. Munich, 1924, p. 13, No. 108.

[15] Nicephorus, *Opuscula Historica*, ed. C. de Boor, Leipzig, 1880, 65, 66; Theophanes, I, 427, 429; Michael Syrus, *Chronique*, ed. and transl. J. B. Chabot, 2. Paris, 1901, 518, 521, 523, Agipius of Menbidj *Histoire universelle*, tr. A. A. Vasiliev, *Patrologia Orientalis*, 8 (1912), 544; Ghevond, *op. cit.*, 126—127.

Արաբներէն եւ Սուրիա փոխադրուեցան[16]: Լեւոն Դ.ի օրով, Կիլիկիոյ եւ Սուրիոյ մէջ կատարուած բիւզանդական ասպատակային արշաւանքի մը հետեւանքով հազարաւոր տեղացիներ բռնուեցան, 150,000 ըստ աղբիւրի մը, որոնք Թրակիա հաստատուեցան[17]: Ասոնք, սակայն, գլխաւորաբար Յակոբիկեան Ասորիներ էին, թէեւ անոնց հետ մաս մը Հայեր ալ կրնան գտնուած ըլլալ: Թրակիա հաստատուած Հայերէն շատերը բռնուեցան պուլկար Քրումի կողմէ (803—814) եւ տարուեցան, բայց անոնցմէ շատերը վերադարձան ըստ պատահման: Ըստ աւանդութեան, ապագայ Վասիլ Ա. կայսեր ծնողքը եւ նոյն ինքն Վասիլ այս գերիներուն մէջ կը գտնուէին: Բայց պատճառներ կան այս աւանդութեան ստուգութեան մասին տարակուսելու[18]:

Թրակիա հաստատուած զանազան ցեղային խմբաւորումները զօրացան աւելի ետքը կատարուած փոխադրութիւններով: Տա-

---

[16] Agapius of Menbidj, 351, 538; Dionysius I. of Tell-Mahré, *Chronique*, tr. J. B. Chabot, Paris, 1895, 56—57, cf. A. Lombard, *Etudes d'histoire byzantine. Constantin V*, empereur des *Romains* (740—755). Paris, 1902, 35.

[17] Theophanes, I, 451—452; Ghevond, *op. cit.*, *150;* Michael Syrus, *Chronique*, 3, 2.

[18] Այս աւանդութեան մանրամասն քննութիւն համար տես N. Adontz, *L'Age et l'Origine de l'empereur Basile I.* Byzantion 8 (1933), 475—500; 9 (1934), 257 ff.

ներորդ դարուն, Յովհաննէս Զմչկիկի օրով, ստուարաթիւ պաւղիկեաններ արեւելեան սահմանագլուխին շրջաններէն տեղահանուելով Թրակիա փոխադրուեցան, աւելի ճշտիւ Փիլիպպոպոլիսի շրջակայ գիւղերը[19]: Այս պաւղիկեանները շատ հաւանականաբար մեծամասնութեամբ Հայ էին: Ատեն մը ետք, Թերեւս 988ին, Հայեր փոխադրուեցան նաեւ Մակեդոնիա: Ասոնք Վասիլ Բ.ի կողմէ բերուեցան կայսրութեան արեւելեան նահանգներէն իբրեւ պատնէշ ծառայելու համար Պուլկարներուն դէմ, ինչպէս նաեւ երկրին բարգաւաճման սատարելու համար[20]:

Մինչեւ այդ ատեն, ուրիշ Հայեր Կայսրութեան մէջ ուրիշ տեղեր փոխադրուած էին: Նիկեփորոս Ա., իններորդ դարուն սկիզբը, ի մէջ այլոց Հայեր գործածեց Սպարտայի վերաբնակչութեան համար[21]: Ատեն մը առաջ, շուրջ 792ին, Արմենիակոններուն մէջ անյաջող ապստամբութեան մը հետեւանքով, — այս զօրաբանակը անկասկած մեծամասնութեամբ Հայերէ բաղկա-

---

[19] Cedrenus, *Historiarum Compendium* Bonn, 1899, 2, 382; Anna Comenena, *Alexiad,* 2. Bonn, 1878, 298 f.

[20] Stephen (Asoghik) of Taron, *Histoire universelle* (2ème partie), tr. from Armenian by F. Macler. Paris, 1917, 74.

[21] P. Charnais, *The Chronicle of Monemvasia and the question of the Slavonic Settlements in Greece.* Dumbarton Oaks Papers 5 (1950) 154—155.

*ցած էր — անոնցմէ հաղար հոգի Սիկիլիա եւ ուրիշ կղզիներ ղրկուեցան*[22]*: 885ին Նիկեփոր Փոկաս, մեծ հայրը տասներորդ դարու համանուն կայսեր, ստուարաթիւ Հայեր հաստատեց Կալաբրիա: Ասոնք, ինչպէս կը խորհի* Grégoire, *կրնան պաւղիկեաններ եղած ըլլալ, որովհետեւ կայսերական բանակները միայն քանի մը տարի առաջ գրաւած էին այս աղանդին միջնաբերդը՝ Տեփրիկէ (Տիվրիկ· Հ·Պ·) եւ պաւղիկեանները ցանուցիր եղած էին*[23]*: Ուրիշներու հետ Հայերն ալ փոխադրուած էին Կրետէ, 961ին, ապագայ կայսր Նիկեփոր Փոկասի կողմէ կղզիին գրաւումէն ետք*[24]*: Ծանօթ է որ տասներորդ դարուն հայկական երկու զինուորական գաղութներ կային արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ: Ասոնք* Prine*ի եւ* Platanion*ի գաղութներն էին, որոնք, ըստ Կոստանդին Ծիրանեծինի, հայ զինուորներ հայթայթեցին Լեւոն Զ·ի օրով Կրետէի դէմ կատարուած արշաւանքին: Թրակեսեան թեմին մէջ հաստատուած Հայեր ալ մասնակցեցան 949ին Կրետէի դէմ կատարուած արշաւանքին*[25]*:*

*Բանակին միջոցաւ է որ Բիւզանդիոնի*

[22] Theophanes, I., 469.

[23] H. Grégoire, *La carrière du premier Nicéphore Phocas, Προσφορὰ εἰς Στίλπωνα Π. Κυριακίδην,* Thessalonica, 1953, 251.

[24] Leo Diaconus, *Historia.* Bonn. 1828, 28.

[25] P. Charanis, *On the Ethic composition of Byzantine Asia Minor in the Thirteenth Century. Προσφορὰ εἰς Στίλπωνα Π. Κυριακίδην,* 142 ff.

*մէջ հայկական տարրը մեծագոյն ազդեցութիւնը գործեց: Քաջածանօթ է որ հայկական տարրը գերակշիռ տեղ մը կը գրաւէր Յուստինիանոսի բանակներուն մէջ: Հայկական զօրախումբեր կռուեցան Ափրիկէ, Կրետէ եւ արեւելեան ճակատին վրայ: Գերակշիռ էին նաեւ պալատական պահակազօրքին մէջ: Պրոկոպիոս իրենց անուններով կը յիշէ ոչ նուազ քան տասնըեօթը հայ զօրավար, ներառեալ, բնականաբար, Մեծն Ներսէսը*[26]*: Բայց Հայերը միայն մէկն էին այն այլազան ցեղային տարրերէն որ Յուստինիանոսի բանակը կը կազմէին: Այս տարրերուն մէջ կային բազմաթիւ բարբարոսներ, Երուլացիներ* (Erulian), Gepid*ներ, Գոթեր, Հոներ, Լոմբարդացիներ, Մաւրեր, Սաբիրներ, Սլաւներ, Անթաներ, Վանդալներ, նաեւ մաս մը Պարսիկներ, Իբերացիներ, Ծաներ, եւ նահանգներու ժողովուրդներէն Իլլիւրիացիներ, Թրակացիներ, Իսաւրացիներ եւ Լիկաոնացիներ*[27]*: Յուստինիանոսի անմիջական յաջորդներուն օրով, բիւզանդական բանակին ցեղային կազմը գրեթէ նոյնը մնաց: «Կ'ըսուի թէ, կը գրէ Եւագր, Տիբերիոս* 150,000 *հոգինոց բանակ մը կազմեց այն ժողովուրդներէն որ Ալպեաններէն անդին Հռենոսի շուրջը կը բնակէին,*

---

[26] P. Charanis, *Ethnice changes in the Byzantine Empire in the Seventh Century,* Dumbarton Oaks Papers 13 (1959).

[27] *Ibid.*, 31.

ինչպէս նաեւ Ալպեաններուն այս կողմը բնակողներէն, Մադդուլթներէն, եւ ուրիշ Սկիւթական ցեղերէ, Պաննոնիա եւ Միսիա բնակողներէն, ինչպէս նաեւ Իլլիւրացիներէն եւ Իսաւրացիներէն, եւ զանոնք դրկեց Պարսիկներուն դէմ»[28]: Եւագրի յիշած թիւը կրնայ թերեւս խնդրական ըլլալ, բայց իր տեղեկութեան մնացեալ մասը, ըստ հիմնականին, տարակուսելի չէ: Թէոփանէս կը հաստատէ զայն, թէեւ շատ աւելի փոքր թիւ մը (15,000) կը յիշէ[29]: Եւ Յովհաննէս Եփեսացի կը պատմէ թէ Պարսկաստանի հետ բանակցութեանց ձախող վերջաւորութենէն ետք (575—577), 60,000 Լոմբարդացիներու կը սպասուէր Բիւզանդիոնի մէջ[30]: Նոյն հեղինակը կը գրէ· «Հարկը ստիպեց Տիբերիոսը իր դրօշին տակ հաւաքել Գոթ կոչուած արեւմտեան բարբարոս ժողովուրդ մը, որ չար Արիանոսի աղանդին կը պատկանէր: Ասոնք Պարսկաստանի դէմ ճամբայ ելան, իրենց կիներն ու զաւակները Պոլիս ձգելով[31]: Կ. Պոլսոյ մէջ այս Գոթերուն կիները խնդրեցին որ իրենց յատկացուի եկեղեցի մը, որպէս զի կարենան իրենց պաշտամունքը կատարել ըստ արիոսական դաւանութեան: Այսպէս, բոլորովին ստոյգ կը

[28] Evagrius, 209 f.

[29] Theophanes, I, 251.

[30] John of Ephesus, Smith, 407, Brooks, 234.

[31] *Ibid.*, Smith, 207, Brooks, 113.

թուի թէ Տիբերիոսի օրով բիւզանդական բանակին ցեղային կազմը ըստ էականին մնաց այնպէս, ինչպէս որ էր Յուստինիանոսի իշխանութեան օրով:

Կացութիւնը փոխուեցաւ Մաւրիկ կայսեր իշխանութեան օրով, գլխաւորաբար իբր հետեւանք Պալքանեան թերակղզիին մէջ աւարական եւ սլաւական ասպատակութեանց: Այս ասպատակութիւններու հետեւանքով Իլլիւրիոմը գործնականապէս դադրեցաւ զինուոր հայթայթող աղբիւր մը ըլլալէ եւ Թրակիոյ մէջ գործողութեանց կարեւութիւնները դադրեցան: Արեւմուտքի հետ հաղորդակցութիւնները խզուեցան եւ հոնկէ զինուոր բերելը շատ դժուարացաւ: Ասոր հետեւանքով, Կայսրութիւնը, զինուոր ճարելու համար, ստիպուած էր ուրիշ կողմ դիմել: Եւ դարձաւ դէպ ի կովկասեան սահմանները եւ Հայաստան: Մաւրիկի բանակներուն մէջ դեռ կը գտնուին Հոներ[32] եւ մաս մըն ալ Լոմբարդացիներ[33], ինչպէս նաեւ Պուլկարներ[34]: Բայց հայկական տարրն էր գերակշիռ: Այս մասին Սեբէոս անգամ մը եւս թանկագին աղբիւր մըն է: 591ին Աւարներուն դէմ Մաւրիկի ձեռնարկած պատերազմին առնչութեամբ կը գրէ. «Մաւրիկ հրաման ետ դարձեալ ժողովել զամենայն այր

[32] Theophylactus Simocatta, *Historia*, ed. C. de Boor, Leipzig, 1887, 67.

[33] *Ibid.*, 104.

[34] Michael Syrus, 2, 72.

եւ ձի ի Հայաստանեայց եւ զիշխանս նախարարացն, որք հմուտ էին եւ կարող զդէմ ունել՝ կռուել ռազմ ի նիզակամուխ ճակատի։ Եւ հրաման ետ դարձեալ վերստին զաւր հանել յաշխարհէն Հայոց բազում յոյժ, զամենեսեան կամով եւ ընտրով հասակի. կազմել զունդս զարդու եւ զինու վառեալ եւ անցուցանել զամենեսեան յաշխարհն Թրակացւոց ընդդէմ Թշնամւոյն. եւ Մուշեղ Մամիկոնեան զաւրագլուխ նոցա[35]»։

Այս բանակը իրապէս կազմուեցաւ եւ պատերազմեցաւ Թրակիոյ մէջ։ Մուշեղ Մամիկոնեան գերի ինկաւ եւ սպաննուեցաւ[36], որուն վրայ հրաման արձակուեցաւ 2000 զինեալ այրուձիէ բաղկացած հայկական ուժ մը կազմել։ Այս բանակն ալ Թրակիա ղրկուեցաւ[37]։ Աւելի առաջ, պարսկական պատերազմներուն ատեն, կարեւոր հայկական զօրամասեր Յովհաննէս Միսթակոնի հրամանին տակ կը գործէին արեւելեան ճակատին վրայ[38]։ 602ին, Մաւրիկ հետեւեալ հրամանը արձակեց. «Երեսուն հազար հեծեալ վզենակալ է իմ ի վերայ աշխարհին Հայոց։ Արդ ԼՌ երդաւոր ժողովեսցին ինձ անտի եւ նստուսցին ի Թրակացւոց աշխարհին[39]»։ Պրիս–

[35] Sebeos, 35 = Հր. Մալխասեան, էջ 53—54։
[36] Cf. Goubert, *op. cit.*, I, 197.
[37] Sebeos, 36—37 = Հր. Մալխասեան, էջ 55—56. Cf.Goubert, *op. cit.*, I, 200; Dölger *op. cit.* 12, Nº 94.
[38] Theophylactus Simocatta, 205, 216.
[39] Sebeos, 54—55 = Հր. Մալխասեան եւն, էջ

կոս Հայաստան ղրկուեցաւ այս հրամանը գործադրելու համար, բայց դեռ գործի չըձեռնարկած՝ յեղափոխութիւն մը ծագեցաւ, որ տապալեց Մաւրիկը եւ, ըստ երեւոյթին, հրամանը չգործադրուեցաւ: Տահեկան է ուշադրութեան առարկայ ընել հեծելազօրքին թիւին եւ Թրակիա փոխադրուելիք ընտանիքներուն թիւին միջեւ կապը: Յայտնօրէն, մէն մի ընտանիք մէկ հեծեալ զինուոր պիտի տար եւ անտարակոյս ամէն ընտանիքի հող մը պիտի տրուէր: Ասիկա թերեւս ցոյց կուտայ թէ Մաւրիկ Թրակիոյ մէջ հաստատել կ'ուզէր զինուորական կալուածներու (estate) դրութիւնը[40]: Ինչ որ ալ ըլլայ, բացայայտ է թէ Մաւրիկի օրով Հայաստան եղաւ բիւզանդական բանակին աղբիւրը: Նոյնը ճիշտ է Հերակլիոսի իշխանութեան շրջանին ալ, — Հերակլիոս հայկական ծագում ունէր[41] —, թէեւ այս կայսրը կովկասեան ուրիշ ժողովուրդներէ, Լազերէն, Աբասգներէն, Իբերա–

71: Cf. Goubert, *op. cit.*, I, 209; Dölger, *op. cit.*, 16, No 137.

[40] Զինուորական աւատներու տարածման վերաբերեալ քանի մը նոր տնտութիւններու մասին տե՛ս P. Charanis, *Ethnic changes in the Byzantine Empire in the Seventh Century*, 33, n. 60a.

[41] Կ'ըսուի թէ Հերակլիոս կայսեր հայրը, նոյնպէս Հերակլիոս անուն, որ Մաւրիկի զօրավարներէն էր, Հայաստանի քաղաքներէն մէկուն մէջ ծնած էր: Theophylactus Simocatta, 109—110: John of Nikius Հերակլիոս կայսեր համար կ'ըսէ թէ Կապադովկիացի էր· *Chronique*, tr. H. Zotenberg. Paris, 1883, 431.

ցիներէն, ինչպէս նաեւ Խազարներէն ստուարաթիւ զինուորներ առաւ[42]: Ամբողջ եօթներորդ դարուն ընթացքին Հայերը ամէնէն գերակշիռ տարրերէն մէկն էին բիւզանդական բանակին մէջ: Եւ եթէ եօթներորդ դարուն վերջերը Հայաստանի արաբական գրաւումը դժուարացուց այդ երկրէն նոր զինուորներ բերել, սակայն Հայերը չարունակեցին կարեւոր դեր մը գրաւել կայսերական բանակին մէջ: Ասոր պատճառը միայն այն չէր որ հայախօս սահմաններէն ոմանք կայսրութեան մէջ կը մնային, այլ նաեւ որովհետեւ ստուարաթիւ Հայեր բիւզանդական բանակին նոր կազմակերպութեան անբաժանելի մասը կը կազմէին:

Կայսրութեան զինուորական նոր կազմակերպութեան հիմնական յատկանիշն էր թեմերու դրութիւնը, նահանգային նոր կազմակերպութիւն մը, որուն հիմնական տարրը կը կազմէր զօրաբաժինը, որ իւրաքանչիւր նահանգի մէջ մշտական էր: Զօրաբաժինը կը գտնուէր հրամատարութեանը տակ զինուորականի մը, որ միեւնոյն ժամանակ ունէր նահանգային կուսակալի հանգամանքը, վայելելով թէ՛ զինուորական եւ թէ քաղաքական իրաւասութիւններ: Այս նահանգային կամ թեմական զօրաբաժինը յաճախ

[42] Theophanes, I, 304, 309, 316; Nicephorus, 15; Agapius of Menbidj, 463, cf. H. Grégoire, *An Armenian Dynasty on the Byzantine Throne*. Armenian Quarterly I, (1946), 9.

կազմուած էր զանազան ցեղային տարրերէ, որոնց տեւական ներկայութիւնը նահանգի մը մէջ կը նպաստէր այդ նահանգին ցեղային կազմութեան խաթարման: Նոր կազմակերպութեամբ ստեղծուած նահանգները թեմ կը կոչուէին, եւ նախկին նահանգներէն կը տարբերէին ո՛չ միայն իրենց վարչական դրութեամբ, այլ եւ իրենց տարածութեամբ եւ ձեւաւորումով: Թեմական դրութիւնը, ինչ որ ալ ըլլայ անոր ծագումը, իր վերջնական ձեւը ստացաւ եօթներորդ դարուն[43]:

Փոքր Ասիոյ թեմերուն մէջ Արմենիակոն (Armeniakon) թեմը ամէնէն կարեւորներէն մէկն էր, եւ միայն Անատոլիկոնը (Anatolikon) անկէ նախադաս էր: Լայնածաւալ հողամաս մըն էր, բաղկացած նախկին վեց նահանգներու ամբողջութենէն կամ մասերէն, ինչպէս որ գոյութիւն ունէին անոնք եօթներորդ դարուն՝ Ա. Կապադովկիան, Բ. Կապադովկիայի մէկ մասը, Ա. Հայքը եւ Բ. Հայքէն ինչ որ դեռ կը մնար կայսրութեան մէջ, Հելենոպոնտոսը եւ Պողեմոնական Պոնտոսը: Մօտաւորապէս եռանկիւնի մը ձեւը ունէր, որուն երկու անկիւնները կը գտնուէին Սեւ ծովուն վրայ, մէկը Սինոպ, միւսը Տրապիզոնի արեւելեան կողմէն ոչ շատ հեռու տեղ մը, եւ երրորդը Թիանայէն քիչ

---

43 Թեմի դրութեան մանրամասն ուսումնասիրութեան համար տես A. Pertusi, *Constantino Porfirogenito de Thematibus.* Studi e Testi, Vatican, 1952, 160.

մը հեռու[44]: Այս թեմը թերեւս կազմակերպուած էր 622էն[45] իսկ առաջ եւ միութիւն մը մնաց ամբողջ եօթներորդ եւ ութերորդ դարերուն: Իններորդ դարուն ընթացքին բաժնուեցաւ բազմաթիւ փոքր թեմերու: 863ին չորս թեմ գոյութիւն ունէր փոխանակ նախկին մէկ թեմին՝ Արմենիակոնը, որ նոր եւ շատ աւելի փոքր գաւառական բաժանում մըն էր, Խարսիանոնը, Խաղտիան եւ Կողոնիան: Սեբաստիայի նոր թեմը, որ ստեղծուած է շուրջ 910ին, նոյնպէս մէկ մասն էր այն սահմաններուն որոնք նախապէս Արմենիակոն թեմին կը պատկանէին:

Տասներորդ դարու կարեւոր մէկ աղբիւրին համաձայն, սկզբնական Արմենիակոն թեմը այս անունը կը կրէր դրացի եւ ընիկ Հայերուն պատճառաւ[46]: Բնականաբար, այս տեղեկութիւնը պէտք չէ այն իմաստով մեկնել թէ թեմին բնակչութիւնը ամէն տեղ Հայ

---

[44] *Ibid.*, 117—120.

[45] George Ostrogastryի այս կարծիքը, թէեւ վերջերս մերժուած է, բայց ինծի ընդունելի կը թուի: Այս տեսակէտին հակառակ՝ տես J. Karayannopulos, *Die Entstehung der byzantinischen Themenordnung*, Munich, 1959; A. Pertusi, *La formation des Thèmes byzantins*, Berichte zum XI. Internationalen Byzantinischen-Kongress. München 1958 (Munich, 1958), I, 1—10: Բայց տես Ostrogorsky, *Korreferat zu A. Pertusi, «La formation des thèmes byzantins»*, Ibid., I, 1—8.

[46] Cons. Porph., *De Thematibus*, ed. Pertusi, p. 63.

էր։ Սեւ ծովուն ափերուն վրայ, մասնաւորաբար Տրապիզոնի շրջանին մէջ, յունախօս տարրը անտարակոյս ամէնէն բազմամարդն էր։ Ներքին մասին մէջ, Իրիսի եւ Ալիսի, եւ Ալիսի կազմած օղակին միջեւ, այսինքն բուն այն սահմանները որոնք, յետոյ, կազմեցին Փոքր Արմենիկոն եւ Խարսիանոն թեմերը, Կապադովկիոյ բնիկ հին բնակիչները, այդտեղ խորապէս հելլենականացած, ամենամեծ հաւանականութեամբ դերակշիռ էին։ Բնականաբար Հայեր ալ կային հոն, բայց իրենց թիւը շատ մեծ չէր։ Սակայն կացութիւնը բոլորովին տարբեր էր թեմին արեւելեան շրջաններուն մէջ, որոնք ի վերջոյ անկէ անջատուեցան կազմելու համար Խաղտիայի, Կողոնիայի եւ Սեբաստիայի թեմերը։ Այս տեղերը Հայերը ստուարաթիւ էին։ Խաղտիայի մէջ, ծովեզերեայ շրջանին երկայնքը, բազմաթիւ Յոյներ կային բնականաբար, բայց ներքնամասին, ինչպէս Քելցենէի նման գաւառներու մէջ, հայ տարրը շատ հզօր էր։ Հզօր էր նաեւ այն սահմաններուն մէջ որոնք յետոյ կազմեցին Կողոնիայի եւ Սեբաստիայի թեմերը։ Այս սահմանները մեծ մասամբ կը գտնուէին Փոքր Հայքի մէջ, ուր հայերէն լեզուն, հակառակ հելլենականութեան կատարած նուաճումներուն, երբեք չէր դադրած խօսուելէ[47]։ Կարեւոր հայ-

---

47 F. Cumont, *L'annexion du Port polémoniaque et de la Petite Arménie.* Anatolian

կական տարրեր կը գտնուէին նաեւ Իրիս — Լիւկոս գետերուն շրջանին մէջ, ուր կը գտնուէին Նէոկեսարիա, Կոմանա, Գաղիուրա, Ամասիա եւ Եւպատորիա: Այս շրջանը մնաց Փոքր Արմենիական Թեմին մէջ[48]: Այս արեւելեան թեմերուն մէջ յարաբերաբար հզօր հայկական տարրը կ'ազդէր թեմերուն զինուորական կազմակերպութեան ցեղային բաղակցութեան վրայ եւ կը կրէր անոր ազդեցութիւնն ալ: Սկզբնական Արմենիական Թեմին զօրախումբերը նախապէս Հայերէ բաղկացած էին[49]: Այն զանազան թեմերուն մէջ, որոնց վերածուեցաւ, գերակշռօրէն հայկական էին Կողոնիայի եւ Սեբաստիայի բանակները[50], եւ տարակոյսէ զերծ է թէ նոյնպէս գերակշիռ էր Փոքր Արմենիական

---

Studies presented to Sir William Mitchell Ramsey. Manchester, 1923, 115.

[48] Bury, Adontzը յիշելով, կ'ըսէ թէ «Յուստինիանոսի շրջանէն ետք, եւ իբրեւ անուղղակի հետեւանքը անոր քաղաքականութեան, Հայերը «Արեւմուտք՝ մինչեւ Կեսարիա եւ հիւսիս՝ մինչեւ Սեւ ծով» տարածուեցան (*History of the Later Roman Empire*). London, 1923, 2, 346, n. 1. cf. N. Adontz, *Armenia in the Epoch of Justinian*. St. Petersburg, 1908 (in Russian), 208: Ադոնցի աղբիւրներն են Կոստանդին Ծիրանածինի de Thematibusը: Ռուսերէն չգիտնալով, Ադոնցի գիրքը կը յիշեմ Cyril Mangoի օգնութեամբ:

[49] Theophanes, I, 469.

[50] Տասներորդ դարուն սկիզբը Սեբաստիոյ մասին Const. Porph., *de Ceremoniis*. Bonn, 1829, 652.

*թեմին մէջ։ Հայ տարրը ստուարաթիւ պէտք է եղած ըլլայ նաեւ Խաղտիայի բանակին մէջ։*

*Ըսուած է թէ հայ տարրը պէտք է գերակշիռ եղած ըլլայ բիւզանդական բանակին մէջ իններորդ դարէն սկսեալ մինչեւ խաչակրութիւնները*[51]*։ Այս հաստատումին արժէքը ստուգելու համար վիճակագրական տեղեկութիւններ կը պակսին։ Այսու հանդերձ, գոյութիւն ունին քանի մը թիւեր, որոնք կը վերաբերին միայն իններորդ դարուն կէսին եւ յիշուած են արաբական աղբիւրներուն մէջ։ Չեն կրնար, հետեւաբար, պաշտօնական նկատուիլ։ Այս արաբական աղբիւրները ընդամէնը տասներեք թեմ կը թուեն, որոնց երկուքը Եւրոպայի եւ տասնըմէկը Փոքր Ասիոյ մէջ, եւ իւրաքանչիւր թեմի զինուորական ուժին թիւերը կու տան։ Թուանշաններու շարքի մը համաձայն, յիշեալ* 13 *թեմերուն բոլոր զինուորներուն թիւը* 90·000 *էր*[52]*։ Ուրիշ շարքի մը համաձայն* 80·000[53]*։ Արմենիական թեմին համահաւաք*

[51] G. Grégoire, *Les Arméniens entre Byzance et l'Islam*. Byzantion 10 (1935), 665.

[52] Brooks, *Arabic Lists of the Byzantine Themes*. The Journal of Hellenic Stadis 21 (1901) 72—76 et n. 5 ou p. 75.

[53] Kodâma in M. J. de Goeje, *Bibliotheca Geographorum arabicorum*, 6, Lugduni Batavorum, 1889, 196—199. *Հայոց ուժին վերաբերեալ կարեւոր ձեռագրական սրբագրութիւն մը տես* H. Gelzer, *Die Genesis der byzantinischen The-*

ոյժը — այդ ատեն դեռ այս թեմին մաս կը կազմէին Կողոնիա եւ Սեբաստիա, Խարսիանոն եւ Խաղտիա—առաջին շարքին մէջ 23·000 է կամ ամբողջութեան 25 առ 100էն աւելի. երկրորդ շարքին մէջ 18·000 կամ ամբողջութեան 22 առ 100էն աւելի: Նկատելով որ այս բանակները, մասնաւորաբար Արմենիականի եւ Խաղտիայի բանակները գերակշռօրէն հայկական էին կամ ծագումով հայկական, եւ նկատելով որ Հայեր կային ուրիշ թեմական զօրախումբերուն մէջ եւս[54], թերեւս այս սակին մէկը կամ միւսը ցոյց կու տայ հայ տարրին ոյժը կայսերական բանակին մէջ իններորդ դարուն կէսին ատենները: Այս ոյժը, բնականաբար, բիւզանդական բանակը հայկական բանակի չէր վերածեր, բայց կայսերական զինուորական կազմակերպութեան մէջ Հայերուն կու տար շատ մեծ ազդեցութիւն մը:

Կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ հայ տարրին նշանակութիւնը կրնայ ցոյց տալ նաեւ թիւը հայկական ծագումով այն մարդոց որոնք ազդե-

---

*menverfassung*, Leipzig, 1899, 97—98. cf. Pertusi, *Cons. Ponf. de Thematibus*, p. 118, որ կը թուի ընդունիլ սրբագրութիւնը: Kodâma չի տար Մակեդոնիոյ ոյժը, բայց Brooksի հրատարակած աղբիւրին համաձայն 5000 էր:

54 Ինչպէս, օրինակի համար, Anatolikon եւ Thracesian թեմերը (Const. Porphyr., *de Ceremoniis*, 652, 657, 667).

ցիկ դիրքեր գրաւած են: Ասոնք ծառայած են իբրեւ զօրավար, իբրեւ անդամ կայսերական անձնապահ գունդին, իբրեւ նահանգային կուսակալ[55]: Հերակլէս կայսեր օրով, հայազգի Մանուէլ praefectus augustalis անուանուած էր Եգիպտոսի: Հայ զօրավարներ նոյն կայսեր ծառայած են պատերազմի դաշտերուն վրայ: Ասոնցմէ մէկը Վահան, իր զինուորներուն կողմէ կայսր յայտարարուեցաւ ճիշտ Եէրմուքի ճակատամարտէն առաջ: Հետագային, Սինայի քաշուեցաւ եւ կրօնաւորեցաւ: Կ. Պոլսոյ մէջ հայ իշխանները շատ ազդեցիկ էին: Նոյն իսկ դաւադրութիւն մը կազմակերպեցին Հերակլիոսը տապալելու եւ անոր տեղ գահ բարձրացնելու համար իր ապօրէն որդին՝ Աթալարիկը: 641ին, հայազգի Վաղենտիանոս Արշակունիի (Valentinus Arsacidus) շնորհիւ է որ գահ բարձրացաւ Կոնստանդ Բ. հօրը մահէն ետք: Վաղենտիանոս արեւելքի բանակներուն հրամանատար անուանուեցաւ, բայց, քիչ ետք, ձախողած ըլլալով գահուն տիրանալու համար կազմակերպած դաւադրութեան մէջ, ըսպաննուեցաւ: Ծանօթ են ուրիշ հայ զօրավարներ ալ որոնք ծառայած են Կոստանդ Բ.ի իշխանութեան օրով: Ասոնցմէ երկուքը Սաբուր (Շապուհ) մականուանեալ Aparasitigan եւ Թէոդոր զօրավարներն էին Ար-

---

[55] Ցաջորդ տողերուն համար տես Charanis, *Ethnic Changes in the Byzantine Empire in the Seventh Century*, 34—36

մենիակներուն, ինչպէս կը կոչուէին Արմենիական թեմին մէջ գտնուող զօրախումբերը: Կոստանդ Բ.ի բռնամահէն ետք, հայազգին Միզիզիոս (Մժէժ Գնունի) կայսր յայտարարուեցաւ եւ թէեւ չյաջողեցաւ գահուն վրայ մնալ, սակայն պէտք է զայն թուել հայածին կայսրերուն մէջ, որոնք Բիւզանդիոնի գահը բարձրացած են: Հետագային, իր որդին Յովհաննէս ինքզինքը այնքան զօրաւոր զգաց որ ըմբոստացաւ Կոստանդ Դ.ի դէմ, բայց ինք ալ ձախողեցաւ եւ ըսպաննուեցաւ: Ծանօթ են բազմաթիւ Հայեր որոնք ութերորդ դարուն ալ կայսերական ծառայութեան մէջ կարկառուն դէմքեր եղած են: Հայազգին Վարդան (Bardanes) գահակալեց 711էն 713: Արտաւազդ (Artavasdos), փեսան Լեւոն Գ.ի եւ նախկին զօրավար Արմենիակներուն, նոյնպէս փորձեց գահը գրաւել եւ պահ մը Կ. Պոլսոյ իրական տէրը եղաւ: Իրեն զօրավիգ եղան ուրիշ Հայեր, ինչպէս իր զարմիկը՝ Տրդատ, Պատրիկ Վահան եւ ուրիշ Արտաւազդ մը: Այն կարճ շրջանին ուր Պոլսոյ տէրը եղաւ, իր որդին Նիկեփորոսը կայսերակից պսակեց եւ միւս որդին՝ Նիկետասը՝ Արմենիակներու զօրավար: Արմենիակները, որոնց ստուար մեծամասնութիւնը, ինչպէս ըսուեցաւ, հայ էր, Արտաւազդի ամէնէն հզօր կողմնակիցներն էին: Ուրիշ կարկառուն հայ դէմքեր կայսրութեան ծառայած են Կոստանդին Ե. Կոպրոնիմոսի օրով: Տաճատ Ան–

ձեւացի, որ Բիւզանդիոն եկաւ շուրջ 750ին, Պուլկարիոյ դէմ Կոստանդինի մղած պատերազմներուն մէջ ցոյց տուաւ յաղթական զօրավարի իր արժանիքները: Լեւոն Զ.ի օրով, Bucellariiի զօրավարը եղած է: Հետագային, փախաւ Արաբներուն քով: Ուրիշ Հայ մը՝ Արտաւազդ Մամիկոնեան իշխանը, որ բիւզանդական ուժերուն միացաւ շուրջ 771ին, Անատոլիկոնի զօրավարն էր Լեւոն Դ.ի օրով: Ուրիշ Հայեր ալ յիշուած են Կոստանդին Զ.ի ու Իրենէի իշխանութեանց օրով: Արմենիակներու նախկին զօրավար մը՝ Վարդաս մասնակցեցաւ Լեւոն Դ.ի տեղ անոր եղբայրը Նիկեփորոսը եւ ոչ որդին Կոստանդինը գահ բարձրացնելու համար կազմակերպած դաւադրութեան մը: Ուրիշ Վարդաս մը իր կեանքը կորսնցուց այն պատերազմին մէջ զոր Կոստանդին Զ. մղեց 792ին Պուլկարներուն դէմ: Արտասերաս կամ Արտաշիր ուրիշ հայ զօրավար մըն էր, որ գործունէութիւն ցոյց տուած է Կոստանդին Զ.ի օրով: Ալեքսիոս Մուսելէ (Մուշեղ) պահակազօրքի հրամանատար (Drungarius) եւ, յետոյ, զօրավար Արմենիակներու, կը թուի նոյն իսկ գահ բարձրանալու ցանկութիւնը ունեցած ըլլալ: Ամէն պարագայի մէջ, այս փառասիրութիւնը ունեցած ըլլալու ամբաստանութեամբ աչքերը խաւարեցուցին: Իր ընտանիքը, ինչպէս պիտի տեսնենք, իններորդ եւ տասներորդ դարերուն շատ բարձր դիրքեր գրաւեց: Հայկական ծագումով բիւ-

դանդական ուրիշ մեծ ընտանիք մը, Սկլերոսները, այս ատենները կամ քիչ մը աւելի ետք Բիւզանդիոնի մէջ սկսան յիշուիլ: Լէօ Սկլերիոս՝ կուսակալ Պեղոպոնէսի իններորդ դարուն սկիզբը՝ այս ընտանիքին մեզի ծանօթ առաջին անդամն է, բայց գերդաստանը արդէն հռչակաւոր էր: Կոստանդին Զ.ի, Իրենէի եւ Նիկեփորոս Ա.ի իշխանութեանց օրով կարեւոր դիրքերու տէր ուրիշ անձեր ալ կրնան Հայ եղած ըլլալ դատելով Վարդանէս անունէն զոր կը կրէին: Ասոնց մէջ էին Վարդանէս պատրիկ եւ domesticus scholarum Թրակեսեաններու զօրավար Վարդանէս, Թուրք մականուանեալ Վարդանէս, զօրավար Անատոլիկոնի, որ փորձեց Նիկեփոր Ա.ը տապալել, Անեմաս մականուանեալ Վարդանէս, որ սպաթարիոս մըն էր: Հայ էր նաեւ պարսիկ Արսաբեր (Արշաւիր), որ questor էր Նիկեփոր Ա.ի օրով եւ Նիկեփորոսը տապալելու համար 808ի անյաջող դաւադրութեան մէջ որոշած էր կայսր ըլլալ:

Իններորդ դարուն ալ հայկական ծագումով նշանաւոր անձնաւորութիւններ յաճախ կը տեսնուին կայսերական տարեգրութեանց մէջ: Ասոնք տիրեցին կայսերական գահուն: Լեւոն Ե., ծանօթ Հայ մակդիրով, գահակալեց 813էն 820: Աղբիւրներէն մէկուն մէջ digenes «կրկնածին» կոչուած է, այսինքն երկու ցեղի ծնունդ, եւ այս ցեղերը յիշուած են իբրեւ ասորի եւ հայ[56]: Սակայն, բոլոր

[56] Symeon Magister, Bonn, 1838, 603.

աղբիւրներուն խորագնին եւ ուշադիր քննութիւնը ցոյց տուած է թէ այս աւանդութեան մէջ ճշմարտութիւն մը չկայ[57]: Հայ մըն էր որ երիտասարդ հասակին Անատոլիկոն թեմին մէջ Պիտրա կոչուած անծանօթ տեղը հաստատուած էր եւ իրեն նման ուրիշ բազմաթիւ Հայերու օրինակին հետեւելով, բանակը մտած՝ ասպարէզ մը ստեղծելու համար իրեն եւ ի վերջոյ կայսերական գահը բարձրացած էր: Իր կինը Թէոդոսիա դուստրն էր պատրիկ եւ questor Արշաւիրի, անտարակոյս այն Արշաւիրին, որ Նիկեփորոսը տապալելու համար 808ին կազմակերպած դաւադրութեան ատեն որոշած էր կայսր ըլլալ: Այսպէս, Լեւոն Ե ծագումով Հայ էր եւ հիմնադիրը եղաւ դերդաստանի մը, որուն հայկական նկարագիրը կը հաստատեն նաեւ այն հայկական անունները զոր կը կրէին անոր անդամներէն ոմանք[58]:

Միքայէլ Բ., որ Լեւոն Ե.ը տապալեց 820ին, կէս հելլենականացած բնիկ մըն էր Ամորիոմի շրջանէն, հաւանականաբար փռիւգիական ծագումով[59], բայց արքայական տունը զոր հիմնեց ի վերջոյ եղաւ մասամբ հայկական եւ ինկաւ Հայոց տիրակալութեան տակ: Թէոդորա, կինը Թէոփիլոսի,

---

[57] Adontz, *Sur l'origine de Léon V, empereur de Byzance.* Armeniaca 2 (1927), 1—10.

[58] *Ibid.*, 9.

[59] Աւանդութեան մը համաձայն, Միքայէլին մեծ հայրը մկրտուած հրեայ մըն էր: (Michael Syrus, 3 : 72).

որդի եւ յաջորդ Միքայէլ Բ.ի, ծնած Պափլակոնիոյ մէջ Եբիսսա, բայց հայկական ծագում ունէր առնուազն հօր կողմէ[60]: Այսպէս, Միքայէլ Գ., որ յաջորդեց հօրը Թէոփիլոսի, մասամբ Հայ էր: Իր մօրը ընտանիքը տիրական ազդեցութիւն մը ի գործ դրաւ անոր իշխանութեան վրայ: Իր թագաւորութեան առաջին տարիներուն, երբ դեռ անչափահաս էր, կայսերական իշխանութիւնը առժամապէս ձեռքն էր իր մօրը՝ Թէոդորային, որուն կը գործակցէին Թէոդորայի ընտանիքին անդամներէն եւ logothete cursus Թէոկտիստոսէ կազմուած խնամակալներու խորհուրդ մը: Ապահովաբար, Թէոդորային ընտանիքին անդամները շուտով չեզոքացուեցան եւ մասնաւորապէս տասնըչորս տարի Թէոկտիստոս, որուն ցեղային ծագումին մասին որոշ տեղեկութիւններ կը պակսին, Թէոդորային ամենազօր նախարարը եղաւ: Բայց իր անկումը եւ 856ին իր սպանութենէն ետք ասպարէզ իջաւ Թէոդորային եղբայրը Վարդաս, որ մինչեւ իր բռնամահը (866)

---

60 Թէոդորայի հայկական ծագումը քաջածանօթ է: Հմմտ. G. Ostrogorsky, *History of the Byzantine State*. New Brunswick, N. J., 1957, 195. Theophanes Continuatus, *Chronographia*. Bonn, 1838, 148, ուր Մանուէլ, Թէոդորայի մօրեղբայրը, Հայ կը կոչուի: Թէեւ այս Մանուէլին ասպարէզին մասին տեղեկութիւնները քիչ մը շփոթ են, այս շփոթութիւնը առնչութիւն չունի Թէոդորայի ընտանիքին հայկական ծագման հետ: Cf. H. Grégoire, *Études sur le neuvième siècle* (Byzantion 8 (1933) 524).

պետութեան իրական վարիչն էր։ Նոյն ատեն, Թէոդորային միւս եղբօրը՝ Պետրոնասի յանձնուեցան կարեւոր զինուորական հրամանատարութիւններ, որոնց մէջ կարողութիւն ցոյց տուաւ։ Իր որդին՝ Մարինոս հետագային քաղաքին կառավարիչ անուանուեցաւ Վասիլ Ա.ի կողմէ [61]։ Կարեւոր պաշտօններու կոչուեցան նաեւ Վարդասի երկու որդիները, որոնց կրտսերը՝ Անթիգոնոս տասը տարեկան էր միայն, եւ իր փեսան, որուն անունը Սիմբատիոս կը մատնէ անոր հայկական ծագումը [62]։

Այս դէպքերուն ատեն, Թէոդորայի ընտանիքին միւս անդամները կարեւոր պաշտօններու կոչուած էին։ Իր հայրը Մարինոս ծառայած է իբրեւ drungarius, ինչպէս նաեւ ինչպէս turmarch [63]։ Իր քեռայրը Կոստանդին Բաբուցիկոս (Babutzikos), որ ամուսնացած էր Սոփիա քրոջը հետ, կը կրէր մագիստեր տիտղոսը եւ պահ մը drungarius vigiliae էր։ Մէկն էր այն 42 բիւզանդացի ըսպաններէն զոր Արաբները սպաննեցին Ամորիոմի գրաւումէն ետք (838) [64]։ Միւս քե-

[61] Symeon Magister, 687; Georgius Monachus, Bonn, 1838, 839.

[62] Theop. Continuatus, 205; Georgius Monachus, 834.

[63] Theoph. Cont., 89.

[64] Theph. Cont., 175; Cedrenus 2, 161. Cf. Vasiliev. — Grégoire, *Byzance et les Arabes*, 1, 147, n. 1։ Իր հայկական ծագումին մասին տես P, Peeters, *Acta Sanctorum, Novembris, Tomus*

*ռայրը Արշաւիր, որ անոր ուրիշ մէկ քրոջը Կալոմարիայի կամ Մարիայի հետ ամուսնացած էր, պատրիկ եւ մագիստրոս էր, տիտղոսներ որոնց շնորհիւ շատ բարձր դիրք մը կը գրաւէր բիւզանդական ընկերութեան մէջ*[65]*: Թէ՛ Բարուցիկոս եւ թէ Արշաւիր Հայ էին: Արշաւիրի երկու որդիները՝ Ստեփան եւ Վարդաս, երկուքն ալ* մագիստրոս *եղան: Վարդաս ամուսնացաւ Կոստանդին Կոնտոմիտէսի աղջկան հետ: Կոնտոմիտէս Սիկիլիայի կուսակալն էր Միքայէլ Գ.ի օրով, իսկ Ստեփան խնամակալական խորհուրդին անդամ էր Կոստանդին Թ.ի անչափահասութեան ատեն*[66]*:*

*Այսպէս, Թէոդորայի ընտանիքը զանազան ատեններ գրաւեց կարեւոր դիրքեր եւ Թէոկտիստոսի անհետացումէն ետք, պետութեան ղեկը ձեռք առաւ: Երբ Վարդասի տապալումով եւ, յաջորդ տարին, Միքայէլ Գ.ի սպանութեամբ, այս ղեկավարութիւնը վերջ գտաւ, ուրիշ հայկական ընտանիք մըն է որ գահ բարձրացաւ: Վասիլ, որ պատասխանատու էր մասամբ հայասեր Ամորեան արքայական տան անճիման, ինչպէս քաջածանօթ է, հայկական ծագում ունէր: Իր սերունդը, եթէ կարեւորութիւն չընծայենք*

---

*Quartus*, Brussels, 1925, 546; J. B. Bury, *A History of the Eastern Roman Empire*, 429.

65 Theph. Cont., 175; Cedrenus, 2, 161; Peeters, *op. cit.*, 546, n. s; Vasiliev-Grégoire, *op. cit.*, 1, 221, n. 2.

66 Theph. Cont., 175, 354, 398.

*իր յաջորդին՝ Լեւոն Զ.ի հայրութեան վերաբերեալ չարախօսութեան, բիւզանդական կայսրութիւնը կառավարեց շուրջ 190 տարի։ Այս արքայական տան մասին աւելի մանրամասնօրէն պիտի խօսինք վարը։*

*Ծանօթ են իշխող տուներուն խնամի կամ ոչ ուրիշ Հայեր ալ որոնք կարեւոր դեր խաղացած են իններորդ դարուն կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ։ Հայազգի Լեւոն Ե. քեռորդի մը ունէր՝ Գրիգոր Պտերոտէս, որ անոր զօրավարներէն մէկը եղաւ։ Երբ Լեւոն գահընկէց եղաւ, Լեւոնին յաջորդը՝ Միքայէլ Բ. աքսորեց Պտերիոսը Սկիւրոս կղզին, բայց Գրիգոր յաջողեցաւ փախչիլ եւ միացաւ Թոմասին, որ ապստամբած էր Միքայէլ Բ.ի դէմ։ Ապստամբութեան ընթացքին, սակայն, փորձեց նորէն Միքայէլի կողմը անցնիլ, բայց վճռական քայլը առնելէ առաջ յարձակումի ենթարկուեցաւ, եւ սպաննուեցաւ Թոմասին կողմէ*[67]*։ Աւելի նշանաւոր էր հայազգին Մանուէլ, մականուանեալ Ամաղեկացի։* Protostrator, *Արմենիականներու զօրավար,* domesticus scholarum, *պատրիկ եւ մագիստրոս, Մանուէլ ծառայեց, եւ, ըստ երեւոյթին, մեծ ծառայութիւններ մատոյց չորս տարբեր կայսրերու՝ Միքայէլ Ա.ի, Լեւոն Ե.ի, Միքայէլ Բ.ի եւ Թէոփիլոսի, թէեւ, ատեն մը, Միքայէլ Բ.ի օրով, Արաբներուն քով փա–*

---

[67] *Ibid.*, 57f, 62f.

խաւ[68] : Այս Մանուէլին համար է որ կ'ըսուի թէ Թէոդորա կայսրուհիին հօրեղբայրն էր, բայց որովհետեւ իր աստղաբէզին վերաբերեալ աղբիւրները շփոթ են, թերեւս Թէոդորայի հօրեղբայրը ուրիշ Մանուէլ մը կամ նոյն իսկ բոլորովին ուրիշ մէկը ըլլայ, թերեւս Նիկետիացի Սերգիոսը, որ արշաւանք մը առաջնորդեց Կրետէի դէմ Միքայէլ Բ·ի իշխանութեան վերջին օրերուն[69] : Ուրիշ Հայ մը, Կոստանդին մականուանեալ Մանիակէս, drungarius vigilae էր, եւ, յետոյ, Միքայէլ Գ·ի իշխանութեան օրով, լոգոթետ էր : Ըստ երեւոյթին, իր հայկական ծագումին գիտակցութիւնը ունէր, որովհետեւ կ'ըսուի թէ բարեկամացած էր ապագայ կայսեր՝ Վասիլի հետ, շատ կանուխէն, որովհետեւ, ինչպէս ինք, Վասիլ ալ Հայ էր : Կոստանդին հայրն էր Թովմաս պատրիկին որ courseի լոգոթետի պաշտօնով ծառայեց Կոստանդին Է·ի իշխանութեան օրով կազմուած խնամակալութեան մէջ, տասներորդ դարուն սկիզբը : Այս Թոմասը պատմագիր Գենեսիոսին հայրն էր, որով Կոստանդին այս վերջինին մեծ հայրն էր[70] :

---

[68] *Ibid.*, 18, 24, 110, 120—121, 127, 148; Genesius, 52, 68.

[69] Grégoire, *Études sur le neuvième siècle*, 521; F. Dvornik, *The Patriarch Photius and Iconoclasm*. Dumbarton Oaks Papers 7 (1953) 69 f.

[70] Théoph. Cont. 150, 194, 196, 229, 238; Georgius Monachus, 835; Cedrenus 2, 280; C. de Boor, "*Zu Genesios*", Byz. Zeit., 10 (1901) 62—65.

Հայկական ծագում ունէր նաեւ Ալեքսիոս Մուսելէ (Մուշեղ), որուն հետ Թէոփիլոս կայսրը ամուսնացուց իր Մարիա դուստրը: Ալեքսիս, որուն ընտանիքը ծանօթ էր նաեւ Krenitae անունով, շատ հաւանականաբար որդին էր Ալեքսիոս Մուսելէին որ, ինչպէս գիտել տրուեցաւ, վարչական կարեւոր պաշտօններ վարած է Կոստանդին Զ.ի եւ Իրենէի օրով: Ալեքսիոս կը կրէր պատրիկ, անդիհիւպատոս, մագիստրոս եւ կեսար բարձր պատուանունները: Իբրեւ կեսար, դահուն նախորոշեալ դահաժառանգը եղաւ, բայց իր կնոջ մահը եւ ապագայ Միքայէլ Գ.ի ծնունդը ցրտութիւն յառաջ բերաւ իր եւ կայսեր միջեւ եւ ինք վանք մը քաշուեցաւ[71]: Ունէր Ալեքսիս Թէոդոսիոս անուն եղբայր մը, որ, դատելով իր պատրիկ տիտղոսէն, նոյնպէս կարեւոր անձնաւորութիւն մը եղած պէտք է ըլլայ[72]: Իբրեւ եղբայրը Ալեքսիոսի, Թէոդոսիոս ալ, բնականաբար, Հայ էր: Հայ էր նաեւ Թէոփիլիցէս հարուստ պալատականը եւ կարեւոր պաշտօնատարը, որուն համար կ'ըսուի թէ ապագայ կայսեր՝ Վասիլին գործ հայթայթած է երբ Վասիլ Պոլիս եկած է, եւ աւելի ետքը դայն մտցուցած է արքունիք: Թէոփիլիցէսի հայկական ծագումը կրնայ

[71] Theoph. Const. 107f.; Symeon Magister, 630; Cedrenus 2, 118 Cf. Bury, *Hisory of the Eastern Roman Empire*, 126, n. 3.

[72] Cedrenus, 2, 119.

*հետեւցուիլ այն իրողութենէն որ Միքայէլ Գ.ի, ինչպէս նաեւ Թէոդորա կայսրուհիին եղբօր Վարդասին ազգական էր*[73]*:*

*Երկու ոճիրները, կեսար Վարդասի սպանութիւնը* 866*ին եւ Միքայէլ Գ.ի սպանութիւնը* 867*ին, որոնք Վասիլ Ա.ը գահ բարձրացուցին, աւելի եւս կը պատկերացնեն այս ազդեցիկ դիրքը, որուն տիրացած էր հայ տարրը արքունիքին մէջ: Երկու ոճիրները բնականաբար, գրգռուած էին նոյն ինքն Վասիլի կողմէ, բայց միայն ուրիշ կարեւոր անձերու օգնութեամբ է որ կրցած էր այդ ոճիրները գործել: Ըսուած է թէ ոճիրին բոլոր մասնակիցները, ինչպէս Վասիլ, հայկական ծագում ունէին*[74]*: Բայց եթէ այս պարագան հաստատող բացարձակ փաստեր գոյութիւն չունին, կարելի է դիւրաւ ցոյց տալ թէ արդարեւ Վասիլին մեղսակիցները մեծամասնութեամբ Հայ էին: Կեսար Վարդասի սպանութեան մասնակցողներուն մէջ ստոյգ գիտենք թէ Հայեր կային, ինչպէս Վասիլին եղբայրը՝ Մարիանոս, Սմբատ, որ* logethete cursus *եւ կեսարին փեսան էր, Սմբատին եղբայրը Վարդաս: Մէկը՝ Յովհաննէս Խալտոս* (Chaldos), *ծանօթ նաեւ Ցիփինարիտէս* (Tziphinarites) *անունով, կրնայ նոյնպէս Հայ մը եղած ըլլալ: Երկուքին՝ Պետեր Բուլգարոսին* (Bulgaros) *եւ Կոստան–*

---

73 Theoph. Contin., 224f., 226, 229.

74 Adontz, *L'âge et l'origine de l'empereur Bazile I.* Byzantion 9 (1934) 229.

դին Տոքսարասին (Toxaras) ցեղային ծագումը կարելի չէ ստուգութեամբ ճշտել։ Ուրիշ դաւադիր մը՝ Լեւոն Ասորի կը կոչուի աղբիւրի մը մէջ, իսկ ուրիշ աղբիւրի մը մէջ Asylacon՝ զարմիկ Վասիլի[75]։ Մարիանոս, Յովհաննէս Խալտոս, Կոստանդին Տոքսարաս եւ Asylacon մասնակից էին Միքայէլ Գ.ի սպանութեանն ալ։ Աղբիւրներուն մէջ շփոթութիւն մը կայ դաւադրութեան միւս մասնակիցներուն մասին։ Ասոնցմէ մէկը՝ Սմբատ, զոր պէտք չէ շփոթել կեսար Վարդասի փեսային հետ, որ կեսարին մահէն ոչ շատ ետք անդամահատուած է, Վասիլին եղբայրն էր, որ Հռետոր Վասիլին հօրը հետ նոյնացուած է եւ որուն մասին ուրիշ տեղեկութիւն չունինք, կրնայ նոյնպէս Վասիլին եղբայրը կամ կեսար Վարդասին փեսային եղբայրը եղած ըլլալ եւ վերջինին պէս մասնակցած էր կեսարին սպանութեան։ Թէ՛ մէկ եւ թէ միւս պարագային, Հայ մըն էր[76]։ Ուրիշ երկու դաւադիրներ Յակոբիցէս (Jacobitzes) եւ Եւլոգիոս (Eulogias) յիշուած են իբրեւ Պարսիկ։ Կ՚ըսուի թէ վերջինը ուրիշ

[75] Symeon Magister, 688; Georgius Monachas, 830; Genesius, 106; Theodosius Melitenus, *Chronographie*, ed. T. L. Tafel, Munich, 1859, 170.

[76] Symeon Magister, 688; Georgius Monachus, 837, ed. E. de Muralt. St. Petersbourg 1861, 750; Theodosius Melitenus, 176. Cf. J. B. Bury, *History of the Eastern Roman Empire*, 458—479; Adontz, *L'âge et l'origine de l'empire Basile I*, Byzantion, 9 (1934) 299ff.

դաւադիրի մը՝ օտար պաշտակագորքին Hetaireia պետ Արտաւազդին հետ պարսկերէն խօսած է: Կարծիք յայտնուած է թէ երեքն ալ՝ Յակոբիցէս, Եւլոգիոս եւ Արտաւազդ իրապէս Հայ էին, ծնած այն հայկական գաւառներուն մէջ, որոնք առեն մը Պարսկաստանի ենթակայ եղած էին, որով իբրեւ Պարսիկ յիշուած են[77]: Այս կարծիքը համոզիչ կը թուի, բայց նկատելով որ հազարաւոր Պարսիկներ Բիւզանդիոն ապաստանած էին Թէոփիլոսի իշխանութեան օրով[78], անհաւանական չէ որ ասոնք, գէթ Յակոբիցէս եւ Եւլոգիոս իրապէս Պարսիկ եղած ըլլան, իսկ Արտաւազդ հաւանականաբար Հայ մըն էր, որ պարսկերէն ալ գիտէր: Արտաւազդոս անուն մըն է զոր կրած են կայսրութեան ծառայած բազմաթիւ անձեր, որոնց հայութիւնը ծանօթ է: Մարիանոս, որդի Պետրոնասի, կրնայ նոյնպէս մասնակցած ըլլալ Միքայէլի դէմ դաւադրութեան: Իր անունը յիշուած չէ բուն ոճրագործին հետ, բայց սպանութեան մեղսակցութիւնը կարելի է ենթադրել այն իրողութենէն որ Վասիլ զայն քաղաքին կառավարիչ անուանեց Միքայէլի անհետացումէն անմիջապէս ետք: Մարիանոս առնուազն մասամբ Հայ էր: Այսպէս, թէեւ կեսար Վարդասին եւ Միքայէլ Գ.ին սպանութեան

[77] Adontz, *ibid.*, 231.

[78] Grégoire, *Manuel et Théophobe ou la concurrence de deux monastères*. Byzantion, 9 (1934) 299ff.

բոլոր մասնակիցները Հայ չէին, սակայն մեծամասնութեամբ Հայերէ բաղկացած խմբակ մըն էր որ վերջ տուաւ Ամորեան տան, եւ գահ բարձրացուց հայազգին Վասիլ: Այս տարրը այս աստիճան ազդեցիկ եղած էր արքունիքին մէջ:

Հայ տարրը գերակշիռ էր նաեւ իններորդ դարուն կայսրութեան մտաւորական կեանքին մէջ: Բիւզանդական կայսրութեան մէջ մտաւորական գործունէութիւնը երբեք չէր դադրած գոյութիւն ունենալէ, բայց ըդդալի կերպով տկարացած էր եօթներորդ եւ ութերորդ դարերուն, եւ կրթական հաստատութիւններէն ոմանք, ինչպէս այն համալսարանը զոր Թէոդոսիոս Բ. հիմնած էր հինգերորդ դարուն, հետզհետէ անկման ենթարկուած էր: Բայց իններորդ դարուն վերածնունդ մը տեղի ունեցած է, նոր զարկ մը տալով ուսման, որ առաւել կամ նուազ չափով պիտի շարունակուէր մինչեւ Կոստանդինուպոլսոյ վերջնական անկումը: Այս վերածնունդին մէջ ոմանք կարեւոր դեր մը կատարեցին: Ասոնց մէջ առաջին տեղը կը գրաւէր Փոտ ապագայ պատրիարքը, որ անկասկած, ուրիշ ոեւէ մէկէ մը աւելի համայնագիտական հմտութեան տէր անձն էր բիւզանդական կայսրութեան մէջ: Յովհաննէս, որ 815ին պատկերամարտութեան վերանորոգման աստուածաբանական հիմերը դրած էր, իր ժամանակակիցներուն մէջ ծանօթ էր իբրեւ նախնեաց գիտութեան քաջահմուտ

անձ մը: Ուսուցիչը եղած էր Թէոփիլոս կայսեր, որ ուսման յառաջդիմութիւնը իր իշխանութեան կարեւոր մէկ գործը նկատեց: Ուսման վերածնունդը իր պսակումը ունեցաւ Կ. Պոլսոյ համալսարանին վերահաստատումով Մանգաուրայի պալատին մէջ եւ այս պատճառաւ ծանօթ է Մանգաուրայի դպրոց անունով: Կեսար Վարդաս հիմնեց եւ Լեւոն Իմաստասէր, որուն մաթեմաթիկոսի եւ հնութեան գիտութեանց վարդապետի համբաւը մինչեւ Պաղտատ հասած էր, դպրոցին գլուխը կը գտնուէին: Բազմաթիւ ուրիշներ, ինչպէս Սլաւներուն առաքեալը Կոստանդին, ծանօթ են այն նպատակով զոր բերած են այդ շրջանին մտաւորական գործունէութեան: Բայց Յովհաննէս Քերական, Փոտ, կեսար Վարդաս եւ Լեւոն Իմաստասէր կը թուին եղած ըլլալ նախաձեռնարկները եւ մղիչ ույժերը: Զորսն ալ գէթ մասամբ հայկական ծագում ունէին: Վարդասին հայկական ծագումին մասին արդէն վերը խօսուեցաւ: Լեւոնին ծագումը կարելի է հետեւցնել այն իրողութենէն որ զարմիկն էր Յովհաննէս Քերականին, որուն հայկական ծագումին մասին ոեւէ տարակոյս գոյութիւն չունի[79], իսկ Փոտի մայրը Իրենէ, դուստրն

79 Theoph. Contin., 154. Հմմտ. Lebeau, *Histoire du Bas-Empire*, 13, Paris 1832, 14, n. 3. Bury, HERE, 60, n. 3. Իր հայկական ծագումը յայտնի է նաեւ իր հօրը՝ Բագրատիսի եւ իր եղբօրը՝ Արշաւիրի անուններէն: Տես նաեւ Cyril

էր Արշաւիրի, այն Արշաւիրին որ ամուսնացած էր Վարդասին եւ Թէոդորա կայսրուհիին քրոջը՝ Կալոմարիային հետ[80]: Այս մարդիկը, բնականաբար, բոլորովին հելլենականացած կ'երեւին: Արդարեւ, անհեթեթ պիտի ըլլար Փոտը Յոյն չհամարել: Այսու հանդերձ, կարելի է խորհիլ թէ արդեօք այս Հայերը ձուլուելով չե՞ն փոխած այն մըշակոյթը որ զիրենք ձուլած էր:

## Բ.

Բիւզանդական կայսրութեան ենթակայ Հայոց թիւը մեծապէս աճեցաւ Վասիլ Ա.ի գահակալութեան յաջորդող շրջանին: Այս աճումը հետեւանքն էր նախ՝ կայսրութեան դէպի արեւելք ծաւալումին եւ երկրորդ՝ Հայոց դէպի արեւմուտք գաղթին: 872ին

Mango, *The Homilies of Photius, Patriarch of Constantinople, English translation, Introduction and Commentary*. Cambridge, Mass., 1958, 240—243. Լեւոնին եւ Յովհաննէսին իրարու ազգական կամ զարմիկ ըլլալուն մասին տես Theph. Contin., 185; Cedrenus, 2, 166: Լեւոնի ասպարէզին վերաբերեալ կենսագրական աղբիւրներու համար տես Mango, *op. cit.*, 161—162.

80 Theoph. Cont. 175. Cf. Bury, HERE, 156, n. 1. Փոտի մօրեղբայրը՝ Արշաւիրը պէտք չէ շփոթել Յովհաննէս Քերականի եղբօրը՝ Արշաւիրին հետ: Տես Adontz, *Role of the Armenians in Byzantine Science*, Armenia Review, vol. 3, no. 3 (1950) 66.

Տեփրիկէի կործանումով պաւղիկեան զին-ուորական դիմադրութեան վերջնական խոր-տակումին եւ պաւղիկեան պետին՝ Chrysochierի ոյժերուն ընաջնջումին հետեւանքով կատարուեցաւ առաջին կարեւոր հողային կցումը:

Պաւղիկեանները կրօնական աղանդ մըն էին, որուն հաւանականաբար պատկանած են ցեղային զանազան ծագումով տարրեր, բայց պաւղիկեան այն կեդրոնները որ այդ ատեն կայսրութեան կցուեցան, անտարակոյս մե-ծագոյն մասամբ հայկական էին: Թէեւ վե-րապրող պաւղիկեանները ցիրուցան եղան կամ մտան կայսերական զինուորական ծա-ռայութեան մէջ ուրիշ տեղեր ծառայելու համար, բայց այն հողերուն վրայ, զոր ստի-պուեցան լքել, շուտով հաստատուեցան ու-րիշ Հայեր կայսերական պաշտպանութեան տակ: Ի բաց աստի, բնիկ բնակիչները ամ-բողջովին տեղահան չեղան: Tarantaի (այժ-մեան Տերենտէ) բերդաքաղաքին բնակիչնե-րը, որոնք համաձայնութիւն կնքեցին կայ-սերական իշխանութեան հետ, անտարակոյս մնացին, եւ հաւանական է որ նոյնպէս մնա-ցին Locanaի բնակիչներէն ոմանք[81]: Taranta

[81] Theoph. Continuatus, 268; Cedrenus, 2, 207; J. G. C. Anderson, *The Campaign of Basil I against the Paulicians in 872 A. D.* The Classical Review 10 (1896) 136 f.; E. Honigmann, *Die Ostgrenze des byzantinischen Reiches.* Brussels, 1935, 74.

յիշուած է իբրեւ խալամական քաղաք մը, բայց նկատելով որ պաւղիկեան սահմաններուն մէջ կը գտնուի, իր բնակիչներուն մէջ Հայեր ալ գտնուած պէտք է ըլլան։ Իսկ Locana անտարակոյս մեծամասնութեամբ հայ բնակչութիւն մը ունէր, որովհետեւ իր պետը՝ հայազգի Kourtikios (Kourterios)ն էր, որ իր հետեւորդներով կայսերական ծառայութեան մէջ մտաւ[82]։

Քանի մը տարի ետք, Լեւոն Զ.ի օրով (886–912) հայկական ուրիշ հողեր ալ կցուեցան, երբ հայ պետը՝ Մանուէլ յանձն առաւ Դեղիք անունով ծանօթ գաւառը կայսրութեան յանձնել։ Դեղիք (հայց. Դեղխս) կը գտնուէր Եփրատի եւ Զմշկածագ-սուի միջեւ եւ հարաւէն սահմանն էր Արածանի, եւ դուռ հայարնակ էր։ Մանուէլ, իր չորս զաւակներով Պոլիս մեկնեցաւ, ուր մեծ պատիւներու արժանացաւ։ Զաւակներէն երկուքին յանձնուեցան կարեւոր զինուորական հրամանատարութիւններ, իսկ միւս երկուքին նոր կալուածներ տրուեցան Տրապիզոնի մօտերը։ Իր նախկին հողերը, որոնց վրայ երկու հայերէնախօս շրջաններ ալ՝ Kelzene եւ Կամախ աւելցան մէկը Խալտիոյ եւ միւսը Կողոնիոյ թեմէն անջատուելով, կազմեցին Միջագետքի թեմը[83]։ Նոր թեմը բոլորովին հայկական էր։

[82] Theoph. Continuatus, 268; Cedrenus, 2, 207.

[83] Constantine Porphyrogenitus, *De Admi-*

Այդ տեղերը ստուարաթիւ Հայեր դէպի արեւմուտք գաղթեցին եւ հաստատուեցան այն սահմաններուն մէջ զոր կը կազմեն վերին Թոխմա-սուի շրջանները, ուր կը թուի թէ կը գտնուէր Symposion կոչուած անապատը, այն սահմաններուն մէջ որ կը գտնուի Arabisosի հիւսիսը, ուր բազմաթիւ ջրաղնացքներ կը միանան եւ կը կազմեն Պիւրամոսը (Ճայհան-սու), եւ ուր, հաւանականաբար, կը գտնուէր Lycandosի հին բերդը, եւ, վերջապէս, այն սահմաններուն մէջ, որոնք վերին Քարմելաս գետին (Զամանթը-սու) երկայնքը, ուր գետին մօտ բարձր տեղ մը, ոչ հեռու Աղիզիյէէն (Յոյներուն Ariaratheiaն), այն ուղիին վրայ որ Կեսարիայէն Կիւրին եւ Կիւրինէն Մելիտինէ կը տանէր, Ծամնդաւի (Tzamandos) բերդը շինուած էր[84]: Այս վայրերը հաստատուելու

nistrando *Imperio*, ed. by Gy. Moravcsik and tr. into English by R. J. H. Jenkins (Budapest, 1949), 226—227; *De Thematibus*, ed. Pertusi, 73 and 139 f. հրատարակչին մեկնաբանութեան համար: Honigmann, *op. cit.*, 69.

Ըստ Jenkinsի Միջագետքի թեմը ստեղծուած է 899ի եւ 901 միջեւ, R. J. H. Jenkins, B. Laourdas, C. A. Mango, «Nine Orations of Arethas from Cod. Marc. Gr. 524», *Byz. Zeitschrift*, 47 (1954), 15: Տես նաեւ Const. Porph., *De Administrando Imperio*, vol. II, Commentary, ed. by R. J. H. Jenkins (London, 1962), 189:

[84] Այս վայրերուն տեղագրութեան համար հետեւած եմ Honigmann, *op. cit.*, 55, 64—66, եւ քարտէզ Բ. հատորին վերջը: Փոքր Ասիոյ ճանապարհային

նախաձեռնութիւնը կը պատկանէր բազմաթիւ հայ պետերու, որոնց գլխաւորը եւ անտարակոյս ամէնէն կարողը եւ ամէնէն ռազմաւէրը Մլեհ մըն էր, բիւզանդական աղբիւրներուն Meliasը:

Մլեհ (Մելիաս) կայսերական զինուորական ծառայութեան մէջ մտած եւ Պուլկարներուն դէմ կռուած էր Պուլկարոփիկոնի ճակատամարտին մէջ 896ին, բայց յետոյ շնորհազուրկ եղած եւ Մելիտինէ փախած էր Արաբներուն քով: Քանի մը տարի ետք, Մլեհ եւ ուրիշ չորս պետեր, որոնց երեքը եղբայր էին եւ անոր հետ Մելիտինէ փախած էին, արտօնուեցան Բիւզանդական կայսրութիւնը վերադառնալ: Իրենց յանձնուեցաւ սահմանագլուխի շրջաններէն ոմանց հրամանատարութիւնը վերոյիշեալ սահմաններուն մէջ, բայց երբ չորս պետերը քիչ ատեն ետք անհետացան – մէկը սպաննուեցաւ Արաբներուն դէմ կռուելու ատեն, միւսը աքսորուեցաւ եւ վերջինին միւս երկու եղբայրներուն յիշատակութիւնը այլ եւս չ'ըլլար – բրականութեան մէջ Մլեհ է որ բարգաւաճ իճակի մը վերածեց այդ սահմանները,– որոնց պարարտ հովիտները այնքան նպաս–

---

գրութեան մասին տե՛ս J. G. C. Anderson, *The Road System of Eastern Asia Minor with the Evidence of Byzantine Campaigns*. JHS., 17 (1897) 22—24 and plate I, հատորին վերջը: Honigmann համամիտ չէ Andersonի նոյնացումներէն ոմանց:

տաւոր էին անասնաբուծութեան որ մասնաւոր յիշատակութեան արժանացած են – եւ հոն Հայեր բնակեցուց: Ինք է որ վերաշինեց Լիւկանդոսի հին բերդը եւ հիմնեց Տամնդաւի նոր բերդը, իրեն տրուեցան պատրիկ, յետոյ՝ մաղիստրոս տիտղոսները եւ երբ շուրջ 914ին իր պահանջած սահմանները վերածուեցան Լիւկանդոսի թեմին, անոր առաջին զօրավարը կամ կուսակալը ինք եղաւ: Մելիտինէէն վերադառնալէն սկսեալ Մելիաս կայսրութեան ծառայեց հաւատարմութեամբ եւ արդիւնաւորապէս: Իր հայ հետեւորդներուն թիւը երբեք չդադրեցաւ աւելնալէ: Երբ 934ին մեռաւ, Լիւկանդոսի թեմը լեցուն էր Հայերով, ինչպէս կը գրէ Կոստանդին Ծիրանեծին[85]:

Կայսրութեան մէջ Հայերուն թիւը ա՛լ աւելի աճեցաւ իբրեւ հետեւանք արեւելեան սահմանագլուխին վրայ բիւզանդական յարձակողականին, որ սկսաւ շուրջ 927ին: Այս յարձակողականին ամէնէն վճռական դէպքը

---

[85] Const. Porph., *De Administrando Imperio*, Moravcsik and Jenkins, 238—240. Bonn, 227—228; *De Thematibus*, Pertusi, 75—76, 143—146 (Bonn, 32—35); Honigmann, *op. cit.*, 64: Meliasի մասին՝ P. Kyriakides, *Τὸ Μολυβδόβουλον τοῦ Στρατηγοῦ Μελίου*, in *Ἐπιστημονικὴ Ἐπετηρὶς τῆς Φιλοσοφικῆς Σχολῆς τοῦ Πανεπιστημίου Θεσσαλονίκης*, Thessalonica, 1932, 320—326; Grégoire, Notes épigraphiques, VII, Byzantion 8 (1933) 79 ff. Հմմտ. John Mavrogordato, *Digenes Akrites*, Oxford, 1956, liii.

եղաւ, նոր հողերու կցումին մէջ, Մելիտինէի գրաւումը 934ին: Մելիտինէ հայկական չէր, թէեւ գրաւման ժամանակ, Հայեր կըրնան հոն ապրած ըլլալ: Սակայն, կարճ ատենուան մէջ, Մելիտինէ հայկական քաղաք մը եղաւ[86]:

Մելիտինէի գրաւումը ճամբան բացաւ անդրեփրատեան սահմաններու գրաւման: Այս վայրերէն ոմանք Մելիտինէի էմիրին կը պատկանէին, որով անոնց բիւզանդական գրաւումը քաղաքին գրաւումէն քիչ ետք տեղի ունեցած պէտք է ըլլայ, բայց ստոյգ թուականներ կարելի չէ տալ: Այս սահմաններուն մէջ էին Հանձիթի (Khanzit) շրջանը, որ կը գտնուէր Արածանիի (Arsanias) հարաւակողմը, այն շրջանին մէջ զոր այս գետը եւ Եփրատ կը կազմեն հարաւային ուղղութեամբ եւ կը տարածուէր դէպի արեւելք մինչեւ Կէօլճիւք (Buhairat Sumnin) լիճէն անդին տարածուող երկիրը, ուր մօտը այն կէտին ուր Տիգրիսի ակերէն մէկը՝ Արղանա-սու Տաւրոսը կը կտրէ, Romanopolisի բերդը շինուած է,— Arsamosata (Asmosata, Šimšat) քաղաքը՝ Արածանիի հարաւային գետափերուն վրայ ա'լ աւելի արեւելք, եւ անոր շրջակայքը,— եւ Արածանիի հիւսիսակողմեան եւ Չմշկածագ-սուի արեւելակողմեան երկիրը: Հանձիթ եւ Բոմա—

86 M. Canard, *Histoire de la dynastie des H'amdanides de Jazīra et de Syrie*. Paris, 1953, 736.

նոպոլիս կցուեցան Միջագետքի թեմին[87], բայց Արսամոսատի եւ Չմշկածագ — որուն արեւելակողմեան երկիրը կազմեցին նոր թեմեր, որոնք փոխադարձաբար կոչուեցան Arsamosatonի[88] եւ Charpezikionի թեմեր, թէ-եւ վերջինը 949էն քիչ ետք փոխուեցաւ Chozanonի նոր թեմին, որ կը թուի հիմ-նուած ըլլալ այդ ատենները եւ կը բովան-դակէ նոյն ընդհանուր սահմանները[89]: 949ին

[87] Const. Porph., *De Administrando Imperio*, ed. Moravcsik and Jenkins, 238 (Bonn, 226—227); *De Thematibus*, (Pertusi), 140; Honigmann, op. cit., 70 and 90—92 Romanopolisի տեղադրու-թեան համար: Յետ մահու հրատարակուած աշխա-տութեան մը մէջ (19611), Հոնիկման, ուղղելով իր նախկին կարծիքը, Ռոմանոպոլիսը կը դնէ Արսամո-սատայի արեւելքը Gabalgur, հայերէն Ճապաղջուր, այժմեան Զափաքչուր քաղաքին մօտ. E. Honig-mann, Trois Mémoires posthumes d'histoire et de géographie de l'Orient chrétien (= Acad. Royale de Belgique, Cl. des Lettres etc. Mé-moires, Tome LIV.) (Bruxelles, 1961), 85—123: Իր նախկին նոյնացումը կը պահեմ նկատելով որ Cho-zanonի (Խոզան) եւ Asmosaton (Ծիմշաթ) աշխար-հագրական դիրքը դժուարաւ կրնայ համոզել որ Ռո-մանոպոլիս կրնար կցուած ըլլալ Միջնագետքի եթէ գտնուէր հոն ուր դրած է Հոնիկման վերաքննելով իր առաջին կարծիքը:

[88] Const. Porph., *De Administrando Imperio*, 238, ed. Moravcsik and Jenkins, (Bonn, 226); Honigmann, op. cit., 77; Canard, op. cit., 737.

[89] Charpezikionի մասին *De Ceremoniis*, 662, 666, 667, 669; Honigmann, *op. cit.*, 75—77. Chozanonի մասին, De Administrando Imperio, ed.

նոր կցում մը եւս կատարուեցաւ: Թէոդոսուպոլիս (Էրզրում, Qaliqala) կցուեցաւ եւ կեդրոնը եղաւ նոր թեմի մը, որ կը բաղկանար Եփրատի եւ Երասխի ջրակունքներուն չուրջի երկրէն[90]: Այս բոլոր սահմաններուն մէջ հայերէն կը խօսուէր:

Այս հողերուն վրայ 966ին աւելցաւ Տարօնը, որ կը գտնուէր այն շրջաններուն մէջ ուր Արածանիին կը միանայ իր հարկատուն՝ Գարա-սուն, որ կը բղխի Վանայ լիճին արեւմտեան կողմը բարձրացող Նիմրուտ լեռներէն: Տարօնի մայրաքաղաքն էր Մուշ: Գաւառը, անտարակոյս ստիպման տակ, յանձնուեցաւ Բիւզանդիոնի, ի փոխարէն կայսրութեան մէջ ուրիշ տեղերու, Գրիգոր եւ Բագրատ (Pancration) եղբայրներուն կողմէ, որ զայն ժառանգած էին իրենց հօրմէն: Բիւզանդացիները, հաւանականաբար, իրենց դիրքը չամրապնդեցին մինչեւ 975[91]: Տարօն, բնականաբար, հայկական գաւառ մըն էր:

Այդ միջոցներուն, Հայերուն դէպի

Moravcsik and Jenkins, 238 (Bonn, 226); Honigmann, op. cit. 77—78; Canard, op. cit. 762, n. 99.

90 Yahyā Ibn Said, tr. into French by M. Canard in *Extraits de Sources Arabes*. Bruxelles, 1950 (= Vasiliev-Grégoire, *Byzance et les Arabes*, II, 2), 95; Honigmann, 79, n. 2, 230.

91 Cedrenus, 2, 375; Adontz, *Notes Arméno-Byzantines*, Byzantion 9 (1934) 374 f.; *Les Taronites en Arménie et à Byzance*, Byzantion 10 (1935), 541 f.; Honigmann, 48 f.; Grousset, 493 f.

Արեւմուտք տարածումը կը չարունակէր: «Հայոց Խաչիկ կաթողիկոսին օրով, կը գրէ Ասողիկ հայ պատմագիրը, հայ ազգը ցրուեցաւ եւ տարածուեցաւ արեւմտեան երկիրները այն աստիճան որ կաթողիկոսը եպիսկոպոսներ ձեռնադրեց ասորական Անտիոքի, Կիլիկեան Տարսոնի, Սուլնդայի (Լուլընդայ) եւ բոլոր այս գաւառներուն համար[92*]»: Սուլնդայ Lulon բերդն է Tyanaի հարաւակողմը եւ կ'իշխէր Կիլիկեան Դուռներէն անցնող ճանապարհին վրայ[93]: Վերջնականապէս կայսրութեան կցուեցաւ 876–877ին:

Խաչիկ կաթողիկոսական գահուն վրայ մնաց 972–992ին[94]: Բայց այն Հայերը որոնց համար հարկ տեսաւ նոր եպիսկոպոսութիւններ հաստատել աւելի առաջ սկսած էին ցրուիլ եւ տարածուիլ, եւ այս պարագան կրնայ հաստատուիլ արեւելեան ուրիշ աղ–

---

[92] Stephen (Asoghik) of Taron, tr. Macler, 141; German translation, H. Gelzer and A. Burckhardt (*Scriptores sacri et profani*, 4) Leipzig, 1907, 196 = Հր. Մալխասին, եւն 258:

* [Յաւուրս տեառն Խաչկայ հայրապետին հայոց սփռեալ տարածեցաւ ազգն հայոց զկողմամբքն արեւմտից, մինչեւ ձեռնադրել նմա եպիսկոպոսունս յԱնտիոք Ասորւոց եւ ի Տարսոն Կիլիկեցւոց եւ ի Սուլնդայ (տարբերակ՝ Լուլընդայ) եւ յամենայն գաւառսն յայնոսիկ (Հր. Մալխասեան, էջ 258)]:

[93] H. Gelzer, *Ungedruckte und ungenügend veröffentlichte Texte der Notitiae episcopatum*, München, 1901, 563, n. 2. Cf. Honigmann, 68.

[94] Fr. Tournebize, *Histoire politique et religieuse de l'Arménie*, Paris, 1900, 154.

բիւրներով : Այս աղբիւրներէն մէկը, օրի-նակի համար, նկարագրելով Նիկեփոր Փո-կասի յաջորդական պատերազմները Արաբ-ներուն դէմ, կը նշէ թէ բազմաթիւ Հայեր, փախչելով Բիւզանդիոնի սահմանագլուխնե-րը, Բիւզանդացիներուն կողմէ տեղաւորուե-ցան ոմանք Կապադովկիոյ Սեբաստիան, ուր «յոժ բազմացան», ուրիշներ Կիլիկիոյ այն բերդերուն մէջ որոնք գրաւուած էին Արաբներէն[95] : Կայսերական իշխանութիւն-ները, անտարակոյս, կը քաջալերէին, գու-ցէ նոյն իսկ կը պարտադրէին Հայոց այս տե-ղափոխութիւնները : Արաբներէն գրաւուած քաղաքներուն, ինչպէս Մելիտինէի, 965ին գրաւուած Անտիոքի եւ ուրիշ քաղաքներու բնակիչներուն թիւը աւելցնելու համար, որովհետեւ այս քաղաքներուն բնակչութիւ-նը շատ նուազած էր մահմետականներուն մեծամասնութեան մեկնումին հետեւանքով : Օրինակի համար, ծանօթ է թէ Հայերը եւ Յակոբիկեան Ասորիները Նիկեփոր Փոկաս-ի կողմէ գրեթէ անբնակ դարձած Մելի-տինէն բնակիչներով լեցնելու կոչուեցան[96] : Տասներորդ դարուն Հայոց տարածումը բիւ-զանդական կայսրութեան մէջ միայն սահ-մանափակուած չէր կիլիկեան եւ սուրիա-կան նորագրաւ գաւառներուն այլ տեղի

[95] Bar Hebraeus, *Chronography*, tr. by E. A. W. Budge, Oxford 1932, 1, 169.

[96] Honigmann, Malatya, The Encyclopaedia of Islam, 3, London, 1936, 194. Cf. Canard, 736.

կ՚ունենար նաեւ, ինչպէս ցոյց կու տայ վերը Սեբաստիոյ յիշատակութիւնը, աւելի հին նահանգներու մէջ, ներառեալ Կեսարիոյ եւ Նագիանզոսի շուրջ կապադովկեան շրջանները, ուր տասներորդ դարուն հայկական գաղութներու գոյութիւնը կը հաստատուի ժամանակակից գիտուններու հետազօտութիւններով[97]:

Նոր արեւելեան աղբիւր մը, նկարագրելով Ժ. դարուն Հայոց տարածումը բիւզանդական կայսրութեան մէջ, կ՚աւելցնէ թէ Հռոմներուն մղած բոլոր պատերազմներուն կը մասնակցէր հայ հետեւազօրքը եւ մեծապէս կ՚օգնէր անոնց[98]»: Այս վկայութեան մէջ ոչինչ ցոյց կու տայ բիւզանդական բանակին մէջ Հայոց յարաբերական թուական ոյժը, բայց վկայութիւնը այս տարրին առաջնակարգ կարեւորութիւն մը կը վերագրէ: Տասներորդ դարուն բիւզանդական բանակը, ինչպէս միւս բոլոր դարերուն, մինչեւ կայսրութեան վախճանը բաղկացած էր զանազան ժողովուրդներէ: 50·000նոց բանակը, օրինակի համար, որ ապագայ կայսր Նիկեփորի հայրը՝ Վարդաս Փոկաս առաջնորդեց Սայֆ ալ-Տաուլայի դէմ 954ին, բաղկացած էր Հայերէ, Թուրքերէ, Ռուսերէ, Պուլկարներէ, Սլաւներէ եւ Խազարներէ[99]: Ասոնց վրայ կրնանք աւել-

[97] Grégoire, *Notes épigraphiques*, 82 f.

[98] Bar Hebraeus, 169.

[99] Ibn Zāfir, tr. Canard, *Extraits des*

ցընել Վրացիները[100], քրիստոնէացած Սարակինոսները[101] եւ ուրիշ ժողովուրդներ, որոնք պատերազմներու մասնակցեցան ուրիշ առիթներով եւ որոնց թիւը աննշան չէր բնաւ: Այսու հանդերձ, երբ կ'ուսումնասիրենք այն զանազան պատերազմները զոր տասներորդ դարուն մղեցին բիւզանդական բանակները, մեր ուշադրութեան կը բախի հայ տարրին մշտական ներկայութիւնը: Հայերը մասնակցեցան ամէն կարեւոր պատերազմի. կը կազմէին այրուձիին գրեթէ մէկ երրորդը 911ին եւ 949ին Կրետէի դէմ մղուած չարաբաստիկ արշաւանքներուն մէջ, եւ միշտ ներկայ են Նիկեփոր Փոկասի ուժերուն մէջ որոնք յաջողեցան կղզին գրաւել 960ին[102]: Ասոնք Իտալիոյ մէջ կը պատերազմէին Կրետէի աշխարհակալին մեծ հօրը Երէց Նիկեփորի հրամանին տակ, Վասիլ

*Sources Arabes*, 125; Dahibi, *ibid.*, 243 f.; Canard, *H'amdanides.* Պոլսոյ մէջ 10րդ դարուն սկիզբը Թուրքերուն, Խարեզմցիներուն եւ Խազարներուն ներկայութեան մասին տես A. A. Vasiliev, *Harun-Ibn Yahya and his Description of Constantinople*, Seminarium Kondakovianum 5 (1932) 158.

[100] Cedrenus, 2, 361.

[101] Mas'ūdi, tr. Canard, *Extraits des sources arabes*, 34, 36, Tabari, *ibid.*, 12, Ibn Hauqal, *ibid.*, 419—421.

[102] *De Ceremoniis* 1, 652 ff.; Leo Diaconus, *op. cit.*, 14; G. Schlumberger, *Un empereur byzantin au dixième siècle: Nicéphore Phocas.* Paris, 1890, 46.

Ա.ի օրով, եւ դարձեալ 934ին Կոմաս պատրիկին հրամանին տակ[103]: Անոնք պատերազմեցան Պալքանեան թերակղզիին մէջ, օրինակի համար, 971ին երբ մեծապէս օգնեցին Ռուսերուն դէմ Յովհաննէս Զմշկիկի յաղթանակին, եւ դարձեալ 986ին երբ Վասիլ Բ.ի հրամանին տակ կռուեցան Պուլկարներուն դէմ[104]:

Ամէն պարագայի մէջ, արեւելեան սահմանագլուխին վրայ Արաբներուն դէմ պատերազմներուն մէջ է որ բիւզանդական բանակներուն հայկական զօրախումբերը կարկառուն տեղ մը կը գրաւեն: Յովհաննէս Կուրկուասի (Curcuas) բանակին մէջ անոնց կատարած դերը որքան որ բարձր նկատուի չափազանցուած չ'ըլլար: 923ին, Կուրկուաս ընդհանուր հրամանատարը (Domesticus Scholarum) կարգուեցաւ Բիւզանդիոնի արեւելեան բանակներուն, եւ այս անուանումը կրնայ սկիզբը նկատուիլ Արաբներուն դէմ փայլուն յաջողութեամբ պսակուած ընդհանուր յարձակողականին: Մլեհ եւ իր հայ հետեւորդները, օրինակի համար, մեծագոյն ազդակը եղան Մելիտինէի եւ շրջակայ երկիրներուն գրաւման մէջ

---

[103] Grégoire, *La carrière du premier Nicéphore Phocas*, 235 f., 251; Const. Porph. *De Ceremoniis*, 1, 661.

[104] Stephen (Asoghik) of Taron, 45; cf. Adontz, *Samuel l'Arménien, roi des Bulgares*, 49.

934ին[105] ։ 50.000նոց այս բազմացեղեան բանակին մէջ, որ Վարդաս Փոկաս 954ին կազմեց, Հայ զօրախումբերը ամէնէն կարեւորներէն էին ։ Կ՚ըսուի թէ անոնք ամենածանր կորուստները կրեցին այն աղէտին մէջ որ կրեց բիւզանդական բանակը[106] ։ Հայերը շատ ուշագրաւ դեր մը կատարեցին Նիկեփոր Փոկասի կիլիկեան եւ սուրիական պատերազմներուն մէջ ալ[107], եւ անոնք եղան գլխաւոր զօրավիգները Վարդաս Սկլերոսի երբ 976ին ապստամբեցաւ Վասիլ Բ.ի դէմ[108] ։ Եթէ չափազանցութիւն պիտի ըլլար Սկլերոսի ապստամբութիւնը հայկական ազգային շարժում մը նկատել, բնաւ խնդրոյ առարկայ չի կրնար ըլլալ թէ անոր ոյժերը Հայերէ բաղկացած էին ։ Արեւելեան սահմանագլուխներուն վրայ բիւզանդական ուժերուն մէջ հայկական տարրին գերակշռութիւնը անտարակոյս հիմը կը կազմէր մեզի ժամանակակից դիտումին նկատողութեանը թէ հայ (այսինքն հայկական ծագումով) եւ հայերէնախօս տարրը գերակշիռ եղած ըլլալու է բիւզանդական բանակին մէջ իննե-

[105] Canard, *Les H'amdanides*, 731 ff.

[106] Mutanabbi, tr. Canard, *Extraits des Sources Arabes*, 323.

[107] Cedrenus, 2, 361; Bar Hebraeus, 168; Canard, *Les H'amdanides*, 807, 822.

[108] Cedrenus, 2, 419, Stephen of Taron, tr. Macler, 56; Adontz, *Notes Arméno-Byzantines*, 380; Canard, *H'amdanides*, *844—845*.

բորդ դարէն մինչեւ խաչակրութիւնները։ Արդարեւ դերակշիռ էր, եթէ դերակշիռ բառով ըսել ուզենք թէ աւելի կարեւոր էր քան բիւզանդական բանակին ազգային ուրիշ մէկ տարրը։

Աղբիւրներուն մէջ վկայութիւններ կան թէ բիւզանդական բանակին մէջ ծառայող Հայերը կարգապահ չէին։ Կարելի չէր անոնց վրայ վստահ ըլլալ թէ իրենց դիրքերը պիտի պահէին. յաճախ դասալիք կ՚ըլլային, եւ հրամաններուն միշտ չէին հնազանդեր[109]։ Նկատելով որ այս ամբաստանութիւններուն աղբիւրները մինչեւ մէկ աստիճան պաշտօնական են, կարելի չէ զանոնք բոլորովին մերժել։ Բայց կարգապահութեան պակասը յաճախ կ՚ընկերանայ ոգեւորութեան, եւ բիւզանդական բանակին հայ զինուորներուն ոգեւորութիւնը, քաջասրտութիւնը եւ ռազմական արժանիքները խնդրոյ առարկայ չեն կրնար ըլլալ բնաւ։ Խնդրոյ առարկայ չի կրնար ըլլալ նաեւ այն մեծ նպաստը զոր այս զինուորները բերած են տասներորդ եւ տասնըմէկերորդ դարերուն բիւզանդական բանակին փայլուն յաջողութիւններուն։

---

[109] Nicephorus Phocas, *De velitatione bellica*, Bonn, 1828, with Leo Diaconus 88; von Lingenthal-Zepos, *Ius Graecoromanum*, Athens, 1931, 1, 247; Canard, *Les H'amdanides*, 822; J. Laurent, *Byzance et les Turcs Seldjoucides dans l'Asie occidentale jusqu'en 1081*. 52, n. 1.

Իններորդ դարուն վերջին շրջանին, տասներորդ եւ տասնըմէկերորդ դարերուն բիւզանդական կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ Հայոց դերը շատ աւելի խոր տպաւորութիւն կը թողու, երբ քննենք թէ այս ժամանակաշրջանին որո՛նք էին որ կայսրութեան ճակատագիրը վարեցին: Գրեթէ բոլոր գլխաւոր դէմքերը հայկական ծագում ունէին:

Ամէնէն առաջ կայ արքայական տունը, բիւզանդական կայսրութեան ամենափայլուն տունը: Կայսերական տունը որ պետութեան ճակատագիրը վարեց ամբողջ այս դարաշրջանին Մակեդոնական անունով ծանօթ տունն է, բայց մակեդոնական բառը, զոր հոս կը գործածենք, ցեղային նշանակութիւն չունէր, այլ առաւելապէս կը յատկանշէ արքայական տան հիմնադիր Վասիլ Ա.ի ծննդավայրը: Վասիլ Հայ էր, ծնած Մակեդոնիա, ուր ստուարաթիւ Հայեր հաստատուած էին: Անշուշտ արաբական աղբիւրներուն մէջ յիշատակութիւններ կան որոնք խնդիր կը յարուցանեն թէ արդեօք Վասիլ չի՞ կրնար Սլաւ եղած ըլլալ: Այս յիշատակութիւններէն ոմանց մէջ պարզապէս Սլաւ կոչուած է առանց ուրիշ բացատրութեան: Ուրիշներու մէջ Սլաւ կոչուած է որովհետեւ մայրը Սլաւ էր[110]: Մերօրեայ

---

[110] Tabari, tr. Canard, *Extraits des Sources Arabes*, 6; Eutychius, *ibid.*, 25; Ma-

գիտուններէն ոմանք այս յիշատակութեանց լուրջ կարեւորութիւն ընծայած են եւ, հետեւաբար, Վասիլին սլաւական կամ հայեւսլաւ ծագում մը վերագրած են[111]: Բայց նկատելով որ թէ՛ բիւզանդական եւ թէ հայկական աւանդութիւնները Վասիլին հայկական ծագումը հաստատապէս կը վկայեն, անոնց կարծիքը աւելի քան խնդրական է: Իսկ արաբական յիշատակութիւնները կըրնան լաւագոյն կերպով բացատրուիլ երբեւ հետեւանքը այն իրողութեան որ Վասիլին ծննդավայրը Մակեդոնիան էր, որուն բնակիչները Սլաւ կը նկատուէին Արաբներուն կողմէ: Թէ Բիւզանդական կայսրութեան ամենափայլուն արքայական տան հիմնադիրը Վասիլ Ա. իրապէս Հայ մըն էր թէ՛ հօր եւ թէ մօր կողմէ, կրնայ ապացուցուած իրողութիւն մը նկատուիլ[112]:

Այսպէս, արքայական այն տունը զոր Վասիլ հիմնեց հայկական ծագում ունէր: Քրոնիկագիրները արձանագրած են եւ իրենց յաջորդներուն աւանդած թէ Վասիլին

---

s‘ūdi, *ibid.*, 38, 395; Hamza al-Isfahāni, *ibid.*, 47; Ibn al-Atīr, *ibid.* 139; Sibt Ibn al-Ğauzī, *ibid.* 165.

[111] *Տես, օրինակի համար,* A. A. Vasiliev, *History of the Byzantine Empire*, 324—1453, 2nd ed. 1952, 301.

[112] *Վասիլ Ա.-ի ծագումին եւ կեանքին առաջին շրջանին մանրամասն ուսումնասիրութեան համար տես* Adontz, *L'Age et l'origine de l'empereur Basile I*, Byzantion 8 (1933), 475—550; 9 (1934), 223—260.

յաջորդին Լեւոն Զ.ին իրական հայրը Միքայէլ Գ.ն էր եւ, հետեւաբար, Լեւոն Զ. Վասիլին հարազատ զաւակը չէր: Այս գրուցին ուշադիր քննութիւնը ցոյց տուած է թէ իրական ոչ մէկ հիմ ունի[113], բայց նոյն իսկ եթէ ստոյգ ըլլար թէ Միքայէլ իրական հայրըն էր Վասիլին յաջորդին, դարձեալ Լեւոն Զ առ նուազն մասամբ Հայ պիտի ըլլար, որովհետեւ, ինչպէս ընթերցողը պիտի յիշէ, Միքայէլին մայրն էր հայուհին Թէոդորա:

Մակեդոնական արքայական տան մէջ հայկական տարրը զօրացաւ Կոստանդին Ծիրանեծինի ամուսնութեամբ Ռոմանոս Լեկապենոսի աղջկան՝ Հելենային հետ: Այսպէս, Վասիլ Բ անտարակոյս ամէնէն կարող զինուորական պետը զոր մակեդոնական արքայական տունը տուած ըլլայ, հայ մեծ մայր մը ունէր եւ իր մեծ հայրը կայսր մըն էր, որ իր կարգին թոռն էր արքայական գերդաստանին հայ հիմնադիրին: Գերդաստանը, բնականաբար, հելլենականացած — թերեւս աւելի ճիշտ է ըսել բիւզանդականացած էր, բայց այս հելլենականացումը ստացաւ հանգամանք մը որ անտարակոյս կրած էր գերդաստանին անդամներուն հայկական ծագումին ազդեցութիւնը, թէեւ պատմա-

---

113 Adontz, *La portée historique de l'oraison funèbre de Basile I par son fils Leon VI le Sage*, Byzantion 8 (1939) 508 ff.

բանը չի կրնար ճշտել այս ազդեցութեան աստիճանը:

Տասներորդ դարուն ամենակարող երեք կայսրերը օրինաւոր անդամները չէին Մակեդոնական արքայական դերդաստանին, բայց անոր հետ խնամիացած էին եւ կը յարգէին անոր անդամներուն գահակալութեան իրաւունքը, թէեւ մէկը պիտի ուզէր, եւ իրօք ալ փորձեց, իր ընտանիքին գահ բարձրացումը: Այս կայսերէն երկուքը Ռոմանոս Լեկապենոս (919–944) եւ Յովհաննէս Զմշկիկ (963–976) հայկական ծագում ունէին, ինչպէս վերջնականապէս հաստատուած է:

Քրոնիկագիրները կ'ըսեն թէ Ռոմանոս Լեկապենոս ծնած էր Արմենիակ թեմին մէջ [114], բայց մեզի ժամանակակից գիտունի մը համաձայն, անոր ծննդավայրն էր Lakape (Laqabin), Մելիտինէի հարաւակողմը, եւ իր մականունը Լեկապենոս այս տեղանունէն կը ծագի [115]: Խոնարհ ծագում մը ունէր եւ սահմանափակ կրթութիւն մը – եթէ երբեք կրթութիւն ստացած էր: Հայրը Թէոփիլակտ անուն մէկն էր, մականուանեալ Abastactus, որ, իբրեւ հասարակ զինուոր, անգամ մը Վասիլ Ա.ը փրկած էր Սարակի-

[114] Theophanes Continuatus, 419; Georgius Monachus, 91.

[115] Grégoire, *Notules*, Byzantion, 8 (1933), 572 ff.

նոսներուն ձեռքը գերի իյնալէ[116]: Բայց իբրեւ փոխարինութիւն այս սխրագործութեան ինչ որ շնորհուած էր իրեն, ըստ երեւոյթին, զինքը հարստացուցած չէր: Ամէն պարագայի մէջ, կ'ըսուի թէ իր որդին չքաւոր էր երբ Պոլիս եկաւ եւ ծառայեց կայսերական նաւատորմիղին մէջ: Բայց ուշիմ էր եւ գիտէր մարդիկը ճիշդ դատել, որով հետզհետէ աստիճանի բարձրացում ունեցաւ մինչեւ որ Սամոսի նաւային թեմին կառավարը եղաւ եւ, յետոյ, նաւատորմիղին մեծ ծովակալը (Drungarius): Վերջին պաշտօնը պատեհութիւն ընծայեց իրեն յաղթական ելլել այն պայքարին մէջ որ ծագեցաւ Լեւոն Զ.ի որդւոյն՝ Կոստանդին Ծիրանեծինի անչափահասութեան շրջանին եւ տիրեց իշխանութեան: 919 դեկտեմբերին կայսր պսակուեցաւ պատանի կայսեր հետ իշխանութիւնը վարելու համար: Իր դուստրը արդէն ամուսնացած էր պատանի կայսեր հետ: Այսպէս է որ այս գեղջուկ Հայը կայսր եղաւ եւ իր աղջիկը կայսեր մը կինը, կայսեր մը որ ինքն ալ ուրիշ Հայու մը թոռն էր: Բայց

---

[116] Georgius Monachus, 841; Symeon Magister, 690; Theodosius Melitenus, 178. Const. Porph. Ռոմանոս «հասարակ, անգրագէտ մէկը» կը կոչէ եւ ոչ թէ մէկը անոնցմէ, որոնք հռոմէական ազգային բարքերուն հետեւած են սկիզբէն ի վեր» *De Administrando Imperio* (Moravcsik and Jenkins) 72 (Bonn 88). Տես նաեւ Liudprand of Cremona, *Works*, tr. by E. A. Wright, New York, 1930, 119 ff.; 127.

այսքանով չվերջացաւ գործը: Ռոմանոս չորս զաւակ ունէր, որոնց երեքը՝ Քրիստափորը, Ստեփանոսը եւ Կոստանդինը գահ բարձրացուց իբրեւ իր գահակիցները: Զորրորդը, Թէոփիլակտոս, ետքը պատրիարք կարգեց: Այսպէս, Եկեղեցին եւ պետութիւնը ամբողջովին ձեռքը ինկան այն հասարակ հայ զինուորին որդւոյն եւ թոռներուն, որ ծառայած էր Վասիլ Ա.ին եւ որուն թոռնուհին ալ ամուսնացած էր այդ կայսեր սերունդին միակ վերապրող իշխանին հետ: Թէեւ այս Հայուն որդին եւ թոռները հետագային իշխանութենէ ինկան, իր թոռնուհին, իբրեւ կինը Կոստանդին Ծիրանեծինի, կայսրուհի մնաց եւ կայսրութեան տուաւ յաջորդ կայսրը, այն որ հայրը եղաւ մեծ Վասիլ Բ.ին[117]:

Յովհաննէս Զմշկիկի ծագումը տարբեր էր: Կը պատմուի թէ Խոզան Հայկական գաւառին մէջ ծնած էր այն տեղը որ իր անունով Զմշկածագ կոչուեցաւ[118]: Յովհաննէս Կուրկուաս (Curcuas, Գուրգէն) hikanatoiներու հրամանատարը, որ Վասիլ Ա.ի օրով բանակին մէջ ծառայեց եւ անոր դէմ

---

[117] Ռոմանոս Լեկապինոսի իշխանութեան մասին S. Runciman, *The Emperor Romanus Lecapenus and His Reign*, Cambridge, 1929.

[118] Matthew of Edessa, *Chronique* (E. Dulaurier) 16, 374. Հմմտ. Միքայէլ Ասորի հայերէն թարգմանութիւնը V. Langlois, *Chronique de Michel le Grand*, 281; Leo Diaconus, *op. cit.*, 92.

դաւադրեց[119] Զմշկիկին նախնին էր ուղիղ գիծով: Զմշկիկի հօրը անունը ծանօթ չէ, բայց մեծ հայրը Թէոփիլոս կը կոչուէր եւ նահանգային կուսակալ մը եւ զինուորական հրամանատար մըն էր, որ նշանաւոր հանդիսացաւ Արաբներուն դէմ մղուած պատերազմներուն մէջ Ռոմանոս Լեկապենոսի օրով: Թէոփիլոսին եղբայրը ուրիշ մէկը չէր բայց եթէ հայազգին Յովհաննէս Կուրկուաս, որ, նոյն ժամանակի ընթացքին, փայլուն հրամանատարն էր Բիւզանդիոնի արեւելեան բանակներուն: Այսպէս, Զմշկիկ, մէկը Բիւզանդիոնի խրապէս մեծ զինուոր–կայսրերէն, ծնունդով կը պատկանէր նշանաւոր հայ ընտանիքի մը, որ մաս կը կազմէր Բիւզանդիոնի զինուորական ազնուականութեան: Ամուսնութեամբ խնամիացած էր ուրիշ մեծ ընտանիքներու հետ: Իր առաջին կինը Մարիա, որ մեռած է Զմշկիկի գահակալութենէն առաջ, դուստրն էր Վարդաս Սկլերոսին, որ մէկ անդամն էր հայկական ծագումով նշանաւոր ընտանիքի մը[120]: Մօրը գիծով ազգական էր տասներորդ դարուն հզօրագոյն բիւզանդական ընտանիքներէն մէկուն՝ Փոկասներուն[121]: Իր երկրորդ կինն էր Թէոդորա, դուստրը Կոստանդին Ծիրա–

---

[119] Theoph. Contin., 277; Cedrenus, 2, 213. Cf. A. Vogt, *Basile Ie empereur de Byzance*, 153.

[120] Leo Diaconus, 117; Cedrenus, 2, 384.

[121] Leo Diaconus, 38, 99.

նեծինին եւ հայազգի Հեղէնին[122]։ Թէոդորայի հետ իր ամուսնութեամբ է որ օրինաւորութեան երեւոյթ մը տուաւ կայսերական գահուն իր կողմէ գրաւումը։ Գահ բարձրացած էր մարդասպանութեամբ, մարդասպանութեամբ մը որուն մէջ ինք անմեղ չէր, բայց ինք մեծապէս աւելցուց գահուն փայլը եւ գահը անխախտ փոխանցեց Կոստանդին Ծիրանեծինի թոռներուն՝ Մեծն Վասիլ Բ.ի եւ անոր նուաղ կարող եղբօրը Կոստանդինի։

Տասներորդ դարուն երրորդ կայսրը, որ օրինաւոր մէկ անդամը չէր Մակեդոնական արքայական գերդաստանին բայց անոր հետ կապ ունէր, Նիկեփոր Փոկասն է, կայսրութեան ուրիշ մէկ իրապէս մեծ գինուոր–կայսրը։ Փոկաս կը պատկանէր տասներորդ դարուն ամէնէն նշանաւոր բիւզանդական գերդաստաններէն մէկուն։ Այս գերդաստանին սկզբնաւորութեան մասին ոեւէ տեղեկութիւն չունինք։ Փոկաս անունը յիշուած է նոյն իսկ հինգերորդ դարուն, եւ անոր կը հանդիպինք վեցերորդ դարուն ալ, եւ անշուշտ կայ Փոկաս կայսրը, ըստ երեւոյթին կապադովկեան ծագումով, որ գահընկէց ըրաւ Մաւրիկը եւ իր կարգին գահընկէց եղաւ Հերակլիոսէն եօթներորդ դարուն սկիզբը[123]։ Բայց փաստ գոյութիւն

[122] *Ibid.*, 127.

[123] Georgina Buckler, *A Sixth Century Botaniates*, Byzantion 6 (1931) 409 f.

չունի թէ տասներորդ դարուն այս մեծ գերդաստանը ոեւէ կապ ունէր այս հին Փոկասներուն հետ: Անշուշտ, աւանդութիւն մը գոյութիւն ունէր Բիւզանդիոնի մէջ թէ տասներորդ դարուն Փոկասները հին գերդաստան մըն էին, եւ այս աւանդութիւնը, զոր գերդաստանը յայտնօրէն որդեգրած էր, զանոնք կը կապէր Fabiusներու (Fabii) մեծ տան շառաւիղներուն հետ, որոնք կ'ըսուի թէ ի սկզբան Պոլիս բերուած էին, ուրիշ նշանաւոր ընտանիքներու հետ, Կոստանդին Մեծի կողմէ[124]: Բայց այս աւանդութիւնը հաստատող փաստ մը գոյութիւն չունի: Իրականութեան մէջ, այս գերդաստանին առաջին ծանօթ անդամին մասին իններորդ դարուն երկրորդ կէսէն աւելի հին յիշատակութիւն մը գոյութիւն չունի:

Այս հնագոյն անդամը Կապպադովկիացի, այսինքն Կապպադովկիա ծնած Փոկաս մըն էր, որ իր մարմնական ոյժով եւ քաջասրտութեամբ ուշադրութիւն գրաւեց եւ Վասիլ Ա. զինքը turmareh անուանեց[125]: Փոկաս Նիկեփորոս անուն որդի մը ունէր, որ երիտասարդ հասակին Վասիլ Ա.ի ուշադրութեան առարկայ եղաւ եւ այսպէսով մաս կազմեց այս կայսեր անմիջական շրջանակին: Այսպէս սկսաւ փայլուն ասպարէզ մը, որ տեւեց մինչեւ Լեւոն Զ.ի իշխանու-

[124] Attaliates, *Historia*, 217 ff.

[125] Grégoire, *La carrière du premier Nicéphore Phocas*, 250.

թիւնը եւ որուն ընթացքին Նիկեփորոս նշանաւոր եղաւ իբրեւ նահանգային կուսակալ եւ պատերազմի դաշտին վրայ իբրեւ ընդհանուր հրամանատար[126]: Իր երկու որդիները Վարդաս եւ Լեւոն ալ իր օրինակին հետեւեցան: Լեւոն, Կոստանդին Ծիրանեծինի անչափահասութեան գահակալութեան համար մղուած պայքարներուն մէջ պարտուեցաւ Ռոմանոս Լեկապենոսէն[127], բայց Վարդաս շարունակեց երկար տարիներ կայսրութեան ծառայել: Վարդաս հայրն էր Նիկեփոր Փոկաս կայսեր[128]:

Այսպէս, Փոկասները, ծագումով կապադովկիացի էին եւ իրենց կալուածները կը գտնուէին Կապադովկիոյ մէջ: Այս նահանգին մէջ իններորդ դարուն անտարակոյս գերակշիռ էր յունախօս տարրը[129], իրողութիւն որ եթէ ընտանիքին յունական անունին հետ իր կապակցութեամբ նկատի առնուի, խորհիլ կու տայ թէ Փոկասները յունական ծագում ունէին: Բայց այս տեսութիւնը չէ որ, ի վերջոյ, ինքզինքը պարտադրած է: Ադոնցի կարծիքով, որուն կը հետեւի Grégoire ալ, Փոկասները, ինչպէս ուրիշ բազմաթիւ փոքրասիական ընտանիքներ

---

[126] *Մանրամասնութեանց համար*, Ibid., 232—250:

[127] Cedrenus, 2, 285 f.

[128] *Ibid*, 2, 285, 316, 327.

[129] Cf. Adontz et Grégoire, *Nicéphore au col roide*, Byzantion 8, 208.

իններորդ դարուն Հայ էին: Այս երկու դի—
տունները իրականութեան մէջ կը հիմնուէին
այն իրողութեան վրայ թէ Վարդաս հայ
անձնանունը, որ գործածուած է գերդաս—
տանին գրեթէ բոլոր սերունդներուն մէջ,
անոնց հայկական ծագումին ի նպաստ պա—
րագայ մըն է: Որովհետեւ Բիւզանդիոնի
մէջ, ուր ձգտումը որոշապէս դէպի հելլե—
նականացում էր եւ անձնանունները յունա—
կան ձեւերով կը փոխուէին, ոչ-յունական
անունի մը պահպանումը կրնայ միայն նշա—
նակել թէ այդ անձնանունին տէրը եթէ ոչ
ամբողջովին գէթ մասամբ ոչ-յունական
ծագում ունէր:

Սակայն Փոկասներուն մէջ երկու անուն
կայ որոնք յաճախ կը յիշուին, եւ ուշադրաւ
կանոնաւորութեամբ: Այս անուններն են
Նիկեփորոս եւ Վարդաս, առաջինը յունա—
կան եւ երկրորդը հայկական անուն մը:
Այսպէս, Նիկեփոր Փոկաս, համբաւաւոր
զօրավարը որ ծառայած է Վասիլ Ա.ի եւ
Լեւոն Զ.ի օրով, իր որդիներէն մէկուն ա—
նունը Վարդաս իսկ միւսինը Լեւոն դրած է:
Վարդաս իր կարգին իր որդիներէն մէկուն
Նիկեփորոս (ապագայ կայսրը) եւ միւսին
Լեւոն անունը տուած է: Նիկեփորոս կայսրը
որդի մը ունէր որ հօրը պահակալութենէն
առաջ մեռած էր եւ որուն անունը Վար—
դաս էր[130]: Եթէ մանուկը մեծցած եւ զա—

[130] Cedrenus, 2: 351.

*ւակ մը ունեցած ըլլար, անկասկած անունը Նիկեփորոս պիտի դնէր: Նիկեփորոս կայսեր եղբայրը Լեւոն բազմանդամ ընտանիք մը ունէր: Իր որդիներէն մէկը Նիկեփորոս կը կոչուէր, խսկ միւսը Վարդաս, հաւանաբար Վարդաս Փոկասը որ ապստամբեցաւ Վասիլ Բ.ի դէմ: Այս Վարդաս Փոկասը Նիկեփորոս անուն որդի մը ունէր, որ իր կարգին իր որդւոյն Վարդաս անունը տուաւ*[131]*: Վերջին անգամ Փոկասներուն մասին կը խօսուի Վոտանիատ կայսեր* (1078—1081) *առթիւ, որ կը յայտարարէր թէ ինք Փոկասներէն կը սերէր: Իր մկրտութեան անունը Նիկեփորոս էր*[132]*:*

*Բոլորովին բացայայտ է թէ Վարդաս եւ Նիկեփորոս անուններուն գործածութեան մէջ Փոկասները կանոնի մը կը հետեւէին, որ հետեւեալն էր. մեծ հայրը եւ թոռը սովորաբար նոյն անունը կը կրէին: Եւ եթէ այս կանոնէն կարելի է հետեւութիւն մը հանել, ան է թէ առաջին Փոկասը, զոր Վասիլ Ա. անուանած էր եւ որուն անունը ծանօթ չէ, շատ հաւանականաբ Վարդաս կը կոչուէր եւ իր հայրը, դատելով իր որդւոյն անունէն, Նիկեփորոս:*

*Փոկասներուն մէջ այս անուններուն յաճախ եւ կանոնաւոր գործածութիւնը*

[131] *Աւելի տեղեկութեանց համար տես* Adontz et Grégoire, *Nicéphore au col roide*, 205 ff.

[132] Cedrenus, 2: 726; Attaliates 229. Cf. Buckler, 407 ff.

յայտնօրէն կը ներկայացնէ ընտանեկան կարեւոր աւանդութիւն մը: Եւ այս աւանդութիւնը թերեւս զուրկ չէ կապ ունենալէ գերդաստանին ցեղային ծագումին հետ: Տասներորդ դարուն, Փոկասները շատ հաւանականաբար խառն ծագում ունէին: Մէկ կողմը Յոյն էր կամ խորապէս հելլենականացած, միւս կողմը Հայ էր: Ո՞ր կողմը Յոյն էր եւ ո՞ր կողմը Հայ: Բնականաբար այս հարցումին կարելի չէ պատասխանել ոեւէ ստուգութեամբ, բայց դատելով ընտանիքին անունէն, յոյն կողմը հաւանականաբար արու կողմն էր: Նիկեփորոս Փոկաս մը, թերեւս հայրը այն Փոկասին զոր Վասիլ Ա. turmanrch անուանած էր, աղջիկ առած էր Հայ ընտանիքէ մը, որուն պետը Վարդաս մըն էր, եւ այսպէս հիմնուած է տասներորդ դարուն մեծ գերդաստանը:

Ընտանիքին մէջ գործածուած անուններուն վրայ հիմնուած այս տեսութեան ի նպաստ կը թուի ընտանեկան ծագումին մասին այն աւանդութիւնը որ արդէն յիշուեցաւ: Ըստ այս աւանդութեան Փոկասները, պէտք է յիշել, կը սերէին Fabiusներէն զոր Մեծն Կոստանդին Կ. Պոլիս բերած էր: Բայց այս ընտանիքը՝ մէկ կողմն էր· միւս կողմը իբերական ծագում ունէր եւ կը բարձրանար մինչեւ այն Իբերիացիները զոր, ինչպէս կ'ըսեն, Կոստանդին արեւմուտքէն բերած էր եւ բնակեցուցած այն սահմաններուն մէջ ուր հին ատեն կը բնակէին Ասորեստացի-

ները, յետոյ Մարերը եւ աւելի ետք Հայերը[133]: Արդեօք սակայ ծածկաբանական ակնարկութի՞ւն մըն է Փոկասներուն դէթ մէկ կողմին հայկական ծագումին: Կարելի է այսպէս մեկնել, մանաւանդ որ Վարդաս հայկական անունը այնքան յաճախ եւ այնքան կանոնաւոր կերպով գործածած են անոնք:

Հետեւաբար, Փոկասները, եթէ ոչ ամբողջովին հայկական ծագում ունէին, գէթ մասամբ այդպէս էին, ինչ որ բնականաբար, կը նշանակէ թէ Նիկեփոր Փոկաս, մէկը տասներորդ դարուն երեք կայսերէն, որոնք Մակեդոնական տան օրինաւոր անդամները չէին, առնուազն մասամբ հայկական ծագում ունէր:

Այսպէս, Վասիլ Ա.ի գահակալութենէն սկսեալ մինչեւ Վասիլ Բ.ի (867—1025) մահը բոլոր կայսրերը որ բիւզանդական գահուն վրայ բազմած են հայկական կամ մասամբ հայկական ծագում ունէին: Բայց, այս ժամանակաշրջանին Բիւզանդիոնի զինուորական եւ քաղաքական պետերուն մէջ, բաց ի կայսրերէն, ուրիշ շատերը կային որոնք Հայ էին կամ Հայերէ սերած էին: Ասոնց մէջ էին բիւզանդական պատմութեան ամէնէն կարող զինուորական հրամանատարներէն եւ պաշտօնատարներէն ոմանք: Այս զօրավարներէն եւ պաշտօնատարներէն

[133] Attaliates, 220 ff.

ոմանք կը պատկանէին երկար ետենէ ի վեր կայսրութեան մէջ հաստատուած հայկական ծագումով ընտանիքներու։ Ուրիշներ նոր եկած էին, եւ դեռ ուրիշներ ալ, որոնք առաջին անգամ պատմութեան բեմին վրայ կ՚երեւային, կրնան երկար ատենէ ի վեր հաստատուած ըլլալ, թէեւ այս մասին ոչինչ ծանօթ է։

Տարակոյս չկայ թէ տասներորդ դարուն առաջին կէսին բիւզանդական ամէնէն կարող զօրավարը պատերազմի դաշտին վրայ հայազգին Յովհաննէս Կուրկուասն (Curcuas) է։ Կուրկուաս կը պատկանէր ատենէ մը ի վեր կայսրութեան մէջ հաստատուած բարեկեցիկ ընտանիքի մը։ Ազգականութեան կապեր ունէր Գանգրայի մետրոպոլիտներէն մէկուն հետ, որ Քրիստոփոր կը կոչուէր եւ որուն համար կ՚ըսուի թէ Կուրկուասին առաջին դաստիարակը եղած էր։ Իր մեծ հայրը, որ նոյնպէս Յովհաննէս կը կոչուէր, այն Կուրկուասն է որ, Hikannatosներուն հրամանատարի հանգամանքով կը ծառայէր եւ դաւադրեց Վասիլ Ա.ի դէմ[134]։ Երիտասարդ Յովհաննէս Կուրկուաս կարկառուն դէմք մը եղաւ Ռոմանոս Լեկապենոսի օրով։ 923ին ընդհանուր հրամանատար անուանուելով Բիւզանդիոնի արեւելեան բանակներուն, Կուրկուաս այդ պաշտօնը վարեց աւելի քան քան երկու տարի, եւ այդ ժամանակաշըր–

---

134 Theophanes Continuatus, 426.

*ջանին գրեթէ մշտատեւ պատերազմ վարեց Արաբներուն դէմ եւ գրեթէ միշտ ջախջախիչ յաղթանակներ շահեցաւ*[135]*: Գրեթէ նոյնքան կարող եւ անոր նման օժտուած էր իր եղբայրը Թէոփիլոս որ, ինչպէս բաւեցաւ, մեծ հայրն էր Յովհաննէս Զմշկիկ կայսեր: Յովհաննէս Կուրկուաս պաշտօնէ հանուեցաւ* 944*ին եւ իրեն յաջորդեց պատրիկ Պանթերիոս, որ ազգական ըլլալով Ռոմանոս Լեկապենոսին, հաւանականաբար նոյնպէս Հայ էր*[136]*: Յովհաննէս Կուրկուասի սերունդին անդամները կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ կարկառուն դերեր կատարեցին տասներորդ դարուն վերջին շրջանին եւ տասնմէկերորդ դարուն սկիզբը*[137]*:*

*Ռոմանոս Լեկապենոս նաւատորմիղին վերին հրամանատարութիւնը յանձնեց երկար ատենէ ի վեր կայսրութեան մէջ հաստատուած հայկական ծագումով ընտանիքի մը մէկ անդամին: Այս անդամն էր պատրիկ Ալեքսիոս Մուսելէ, որուն ընտանիքը իններորդ դարուն սկիզբներն իսկ արդէն կարկառուն դիրք մը ունէր: Ալեքսիոս նաւատոր-*

---

[135] *Ibid.*, 426 f., *Յովհաննէս* Curcuas*ի ապարէզին մասին տես* Runciman, *The Emperor Romanus Lecapenus*, 135—150:

[136] Theophanes Continuatus, 429; Georgius Monachus, 917.

[137] Theophanes Continuatus, 428; Cedrenus, 2, 347—348, 405, 483.

միղլին ծովակալ անուանուեցաւ եւ այս հանգամանքով մասնակցեցաւ պուլկար Սիմէոնի դէմ պատերազմներուն եւ կռուի մէջ սպաննուեցաւ[138]: Ռոմանոս իր աղջիկներէն մէկը ամուսնացուց Մուսելէ ընտանիքին մէկ անդամին, թերեւս նոյն իսկ Մուսելէի հետ եւ խնամիական այս կապով զօրացուց գերդաստանին մէջ հայ տարրը: Այս միութենէն ծնաւ մագիստրոս Ռոմանոս Մուսելէ որ կուսակալ եղաւ Ոպսիկիոն թեմին Կոստանդին Ծիրանածինի իշխանութեան օրով: Լեկապենոսեաններուն տապալումէն ետք այնքան ընդարձակ կալուածներու տէր էր Փիլոմելիոնի շրջանին մէջ որ Վասիլ Բ յարմար դատեց դանոնք գրաւել[139]: Ըստ երեւոյթին, այս գրաւումը չքաւորութեան մատնեց ընտանիքը: Մուսելէի ընտանիքին կը պատկանէր թերեւս հայազգին Ալեքսիոս, որ Կիպրոսի կուսակալ եղաւ Վասիլ Ա.ի[140] օրով: Ալեքսիոս անունը այս ընտանիքին սիրելի անունն էր:

Մուսելէ ընտանիքը յիշուած է նաեւ Կրենիտեան (Krenitae) ընտանիք անունով:

---

[138] Theophanes Continuatus, 401; Georgius Monachus, 893—896.

[139] Cedrenus, 2, 343; Theophanes Continuatus, 443. Cf. Runciman, *The Emperor Romanus Lecapenus*, 64. Romanus Musele – ի սեպհականութեանց գրաւման մասին տես Lingenthal-Zepos, 1, 266, ծան. 48:

[140] *De Thematibus* (Pertusi, 81).

Կրենիտես անունը առաջին անգամ գործածուած է Ալեքսիոս Մուսելէի հետ առընչութեամբ, որ, ինչպէս գիտել տրուեցաւ, ամուսնացած էր Թէոփիլոս կայսեր աղջկան Մարիայի հետ: Բայց անունը յայտնօրէն աւելի հին էր, որովհետեւ կ՚ըսուի թէ Ալեքսիոս գրաւած է Կրենիտոխսայի, այսինքն Կրենիտեան ընտանիքին տիկնոջ տունը: Թէ Կրենիտեանները եւ Մուսելէի գլխաւոր գերդաստանը նո՞յնն էին թէ անոր մէկ ճիւղն էին միայն՝ շատ որոշ չէ: Ամէն պարագայի մէջ, հայկական ծագում ունէին: Ծանօթ է որ անոնցմէ ոմանք կարեւոր պաշտօններ վարած են, ինչպէս Գէորգ, Պրոկոպիոս, Արոտրաս, Արոտրասի որդին Աբեսսալոմ (Աբիսողոմ) եւ Փասգալ: Գէորգ ծառայեց Լեւոն Զ.ի օրով եւ պաշտօն ստացաւ հետապնդել Սամոնասը[141], երբ այս վերջինը փախաւ: Պրոկոպիոս հրամանատարն էր բիւզանդական այն բանակին որ դրկուեցաւ պուլկար Սիմէոնի դէմ 894ին, եւ պարտուեցաւ ու սպաննուեցաւ: Արոտրաս Protospatharius (գլխաւոր զինակիր) կուսակալ եղաւ Պեղոպոնէսի եւ Հելլադայի Ռոմանոս Լեկապենոսի իշխանութեան օրով: Աբիսողոմ մասնակցեցաւ 913ին Կոստանդին Տու–

[141] Սամոնասի մասին տես R. Janin, «Un Arabe ministre à Byzance: Samonas»: *Echos d'Orient* 36 (1935), 307—308: Բայց մանաւորապէս R. J. H. Jenkins, «The Flight of Samonas», *Speculum*, 23 (1948), 217—235:

կեծի կողմէ գահը գրաւելու համար կազմակերպուած դաւադրութեան. աչքերը խաւարեցուցին եւ աքսորուեցաւ: Փասդալ բիւզանդական կուսակալը եղաւ Լոմպարտիայի Ռոմանոս Լեկապենոսի օրով: Կայսերական դեսպանի հանգամանքով բանակցութիւն վարեց Իւկ տը Փրովանսի (Hugue de Provence) աղջկան եւ Կոստանդին Ծիրանածինի երիտասարդ որդւոյն ամուսնութեան համար: Ուրիշ Կրենիտեան մըն ալ կայ, որ միայն յիշուած է իբրեւ գլխաւոր զինակից, եւ զոր Ռոմանոս Լեկապենոս իբրեւ թարգման գործածեց Տարօնի հայ իշխաններուն հետ իր բանակցութեանց մէջ: Անկարելի է ըսել թէ ով էր այս Կրենիտեանը, բայց այն տեղեկութիւնը թէ հայ իշխաններուն հետ բանակցութեանց ատեն թարգմանի պաշտօն վարած է, շահեկան է, որովհետեւ ցոյց կու տայ թէ, ինչպէս Ադոնց դիտել տուած է, Կրենիտեանները, թէեւ երկար ատենէ ի վեր կայսրութեան սահմաններուն մէջ հաստատուած էին, սակայն կը շարունակէին հայերէն խօսիլ: Այնպէս կ'երեւայ թէ այս գերդաստանը իր կարկառուն դիրքը պահած է տասնըմէկերորդ դարուն կէսէն ետք ալ[142]:

Սկլերոսեանները, որոնց առաջին ծանօթ անդամը, ինչպէս արդէն ըսուեցաւ,

[142] Krenitեաններուն մասին տես Adontz, *Les Taronites en Arménie et à Byzance*, Byzantion, 10 (1935), 535—540:

Պեղոպոնէսի կուսակալն էր իններորդ դարուն սկիզբը, ուրիշ հայ գերդաստան մըն էր, որ տասներորդ դարուն կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ գերազոյն կարեւորութիւն մը ստացաւ: Պատրիկ Նիկեփորոս Սկլերոս Լեւոն Զ.ի օրով ծառայեց եւ իրեն վստահուեցաւ Հունգարները պուլկար Սիմէոնին դէմ գրգռելու գործը, զոր յաջողութեամբ պսակեց[143]: Անտարակոյս գերդաստանին ամէնէն կարեւոր անդամն էր Վարդաս Սկլերոս: Զմշկիկի օրով, բիւզանդական բանակներուն վերին հրամանատարի հանգամանքով[144], Վարդաս պատերազմի դաշտին վրայ նշանաւոր հանդիսացաւ, բայց իր անունը աւելի ծանօթ է Վասիլ Բ.ի դէմ իր ապստամբութեամբ, ապստամբութիւն որուն մէջ, ինչպէս դիտել տրուեցաւ, իր զինուորները մեծամասնութեամբ Հայ էին, եւ քիչ մնաց որ այս ապստամբութեան շնորհիւ գահ բարձրանար[145]: Սկլերոսեանները խնամխացած էին ուրիշ հզօր գերդաստաններու հետ: Վարդասին քոյրը Մարիա ամուսնացած էր Յովհաննէս Զմշկիկի հետ: Եղբայրը Կոստանդին՝ Փոկասի մը հետ, որ Նիկեփո-

---

[143] Theophanes Continuatus, 358; Cedrenus, 2, 255.

[144] Cedrenus, 2, 417.

[145] Bardas Sklerosի ապստամբութեան մանրամասնութիւնները տես G. Schlumberger, *L'épopée byzantine*, 1, Paris 1896, 354 ff.; 726 ff.:

րոս կայսեր քրոջ աղջիկն էր եւ Վարդաս քոյրն էր Փոկասի, որ Սկլերոսի հակառակորդն էր[146]: Եւ թոռը Վասիլ Արկիւրեան (Argyri) գերդաստանին մէկ անդամին՝ ապագայ կայսր Ռոմանոսին քրոջը Pulcheriaի հետ[147]: Սկլերոսեանները քաղաքականօրէն ազդեցիկ էին ամբողջ տասներմէկերորդ դարուն: Սկլերոս մը մասնակից էր այն գինուորական ապստամբութեան որ Իսահակ Կոմնենոսը գահ բարձրացուց 1057ին[148]: Ուրիշ մը մասնակցեցաւ այն ապստամբութեան զոր Ալեքսիս Կոմնենոսի դէմ կազմակերպեց Անեմաս ընտանիքը[149]:

Արդէն յիշեցինք մագիստրոս Ստեփանոսը, որդի Calomariaի եւ հայազգի Արշաւիրի, որ Կոստանդին Ծիրանեծինի անչափահասութեան ատեն նշանակուած խնամակալներէն մէկն էր[150]: Բայց կայսրութեան կեդրոնական կառավարութեան մէջ աւելի կարեւոր դիրք մը գրաւուած էին հայկական

---

[146] Cedrenus, 2, 392:

[147] *Ibid.*, 2.: 483, 501; Michael Psellos, *Chronographie*, ed. E. Renauld. Paris 1926—1928, 125, 142 = Constantine IX, ch. 15, ch. 50: Վասիլին աղջիկը ամուսնացած էր Կոստանդին Թ.ի հետ. կայսր ըլլալէ առաջ: Վասիլի թոռնուհին գեղեցիկն Սկլերինան էր, որ Կոստանդին Թ.ի սիրուհին եղաւ: Psellos, *Idem.*

[148] Cedrenus, 2, 622:

[149] Anna Comnena, 2, 155 (Bonn); 3, 70 (Ed., B. Leib, Paris, 1945).

[150] Տես ծան. 66:

կամ մասամբ հայկական ծագումով երկու անձ։ Մէկը Stylianos Zaoutzesն է, միւսը Paracoenomenus Վասիլը։ Զաուցէս Մակեդոնիա ծնած Հայ մըն էր, որուն առաջին անգամ կը հանդիպինք Վասիլ Ա.ի շրջանակին մէջ։ Ցայտնօրէն մէկն էր այն պաշտօնատարներէն որոնք Վասիլի վստահութիւնը շահած էին ուրիշներէն աւելի, որովհետեւ Վասիլ մեռնելէն քիչ առաջ Զաուցեսին յանձնեց «եկեղեցական եւ քաղաքական բոլոր գործերուն վարչութիւնը»։ Լեւոն Զ.ի օրով, ամէնէն ազդեցիկ կայսերական նախարարը եղաւ, իրապէս վարելով «եկեղեցական եւ քաղաքական ամէն գործ[151]» Basilopater (կայսերահայր) տիտղոսը մասնաւորապէս անոր համար ստեղծուած էր նոյն իսկ երբ իր դուստրը Զոյէ, որ Լեւոն Զ.ի տիրուհին էր, անոր կինը չէր եղած[152]։ 896ի սկիզբները, իր մահէն ոչ շատ ուշ, պատահեցաւ իր աղջկան ալ մահը։ Իր գերդաստանը, որուն այլ եւս կը սպառնար իշխանութեան կորուստը, դաւադրութիւն մը լարեց կառավարութեան դէմ, բայց դաւադրութիւնը երեւան ելաւ եւ ամէնքն ալ կորուստի մատնուեցան[153]։ Զաուցէսի ընտանիքին այս դա-

---

[151] *Vita Euthymii*, ed. C. de Boor, 2; Karlin-Hayter, Byzantion 25—27, 10, Ֆրանսերէն թարգմանութեամբ մը հրատարակած են։

[152] *Ibid.*, 3, 24 (de Boor); 12, 52 (Karlin-Hayter).

[153] Cedrenus, 2, 258; Symeon Magister, 703.

ւադրութիւնն է որ առաջին անգամ առաջնակարգ դիրքի բարձրացուց Սամոնաս սարակինոսը, մէկը կայսերական կառավարութեան տեղեկահաւաքութեան սպասարկութեան ամէնէն ուշադրաւ անձնաւորութիւններէն:

Paracoemomenos Վասիլ ապօրէն զաւակն էր Լեկապենոս կայսեր, որ, ինչպէս ըսինք, Հայ էր: Իր մայրը Սլաւ էր[154]: Կառավարական գործերու մէջ մտած ըլլալով Կոստանդին Ծիրանեծինի օրով, Վասիլ, Նիկեփոր Փոկասի իշխանութենէն սկսեալ, իրական վարիչը եղաւ կայսրութեան քաղաքային կառավարութեան: Մասնաւորապէս արդիւնաւոր գործունէութիւն մը ունեցաւ Վասիլ Բ.ի իշխանութեան սկզբնական շըրջանին երբ իր իմացականութեան եւ ճարպիկութեան շնորհիւ դեռատի կայսրը յաջողեցաւ հանդարտեցնել այն փոթորիկները որ կը սպառնային զինքը տապալել: Վասիլ թէեւ իրապէս շատ ագահ էր, բայց ոչ միայն վարչական մեծ կարողութեան տէր էր, այլ եւ պետական մարդ մը[155]:

Իններորդ դարուն վերջերը եւ տասներորդ դարուն սկիզբները բազմաթիւ անձնաւորութիւններ ալ կրնան հայկական ծագում ունեցած ըլլալ: Ասոնցմէ մէկն էր Apostyppes մականուանեալ Լեւոն, որ Մա-

---

[154] Leo Diaconus, 46 f.; 94.

[155] Տես Վասիլի նկարագրութիւնը Փսելլոսի կողմէ éd. Renauld, 1, 3, 12:

կեդրոնից կուսակալի հանգամանքով 880ին իր բանակով Իտալիա ղրկուեցաւ Սարակինոսներուն դէմ կռուելու համար: Պատերազմին ձախողութիւնը պատճառ եղաւ իր շնորհազրկութեան եւ աքսորին: Իր որդիներուն Վարդասի եւ Դաւիթի անուններուն վրայ հիմնուելով կարելի է ենթադրել թէ Հայ էր[156]: Ուրիշ մը, որ անտարակուսելիօրէն Հայ էր, պատրիկ Ադրիանն է: Ադրիան բաւական կարեւոր մէկը եղած պէտք է ըլլայ, որովհետեւ Ռոմանոս Լեկապենոս իր Կոստանդին որդին ամուսնացուց անոր աղջկանը հետ[157]: Ուրիշ մը Gregoras Iberitzesն էր, բանակին ընդհանուր հրամանատարը, 906 – 907: Iberitzes աներն էր Կոստանդին Դուկիծի եւ մասնակից էր այն դաւադրութեան զոր վերջինը փորձեց 913ին իշխանութեան տիրելու համար[158]: Նոյն դաւադրութեան մասնակից էր ուրիշ անձ մը՝ Կոստանդին Լիպս (Lips), որ դատելով իր որդւոյն Վարդաս անունէն, հաւանականաբար նոյնպէս Հայ էր: Այս Վարդասը, որ պատրիկ տիտղոսը կը կրէր, մասնակից էր Ռոմանոս Բ.ը տապալելու համար

---

[156] Theophanes Continuatus, 305, 306, 307, 308.

[157] *Ibid.*, 423; Georgius Monachus, 914.

[158] Theophanes Continuatus, 382—383; Symeon Magister, 718—719; Georgius Monachus, 874—875. Cf. Adontz, *Les Taronites en Arménie et à Byzance*, Byzantion 9 (1934) 737.

961ին կազմակերպուած դաւադրութեան։ Լիպս ուրիշ որդի մըն ալ ունէր, նոյնպէս Կոստանդին անուն, որ անթիհիւպատոս եւ պատրիկ տիտղոսը կը կրէր եւ մեծ Hetaeriarch էր Ծիրանածինի իշխանութեան օրով[159]։ Kourtikes, որուն Հայ ըլլալը վերջնականապէս հաստատուած է, եւ որուն մասին վարը նորէն պիտի խօսինք, նոյնպէս Տուկիծի կուսակիցներէն էր[160]։ Կոստանդին Տուկիծի ծանօթ կուսակիցներուն մէջ այնքան շատ կը թուին եղած ըլլալ Հայերը որ կարելի է խնդիր յուզել թէ բիւզանդական այս հզօր ընտանիքը արդեօք հայկական ծագում չունէ՞ր[161]։

Բոլոր այն Հայերուն մէջ որոնք դէպի իններորդ դարուն վերջերը կայսրութեան ծառայեցին եւ թէ իրենց ընտանիքին համար դիրք ստեղծեցին, անտարակոյս ամէնէն հռչակաւորն է Մլեհ, Բիւզանդացիներուն Մելիասը։ Արդէն խօսեցանք այս Մլեհին եւ արեւելեան սահմանագլուխին վրայ անոր գործունէութեան մասին։ Մելիաս իրապէս մեծ դէմք մըն է, որուն սխրագործութիւնները հետագային վերագրուեցան

---

159 Adontz, *Les Taronites en Arménie et à Byzance*, Byzantion 10 (1935), 532—534.

160 Cedrenus, 2: 280; Theophanes Continuatus, 383.

161 Cf. Adontz, *Les fonds historiques de l'épopée byzantine Digénis Akritas*. Byz. Zeitschr. 29 (1929—1930), 205 f.

Digenis Akritesի, բիւզանդական դիւցազնավէպին հերոսին: Մելիաս դիւցազնավէպին մէջ, Melimentzes անունով, Digenisի հակառակորդներէն մէկն է: Մեռաւ 934ին, բայց կ'երեւայ թէ որդի մը թողուց, որ նոյնպէս նշանաւոր եղաւ կայսերական ծառայութեան մէջ, նախ իբրեւ նահանգային կուսակալ եւ, յետոյ, Յովհաննէս Զմշկիկի օրով, իբրեւ ընդհանուր հրամանատար: Մեռաւ Ամիդի առջեւ 973ին: Այս Մելիասն է որ ներկայացուած է Կեսարիայէն ոչ հեռու Կապադովկեան եկեղեցիներէն մէկուն որմնանկարին վրայ, ուր մագիստրոս կոչուած է[162]: Թէ ինչ եղաւ ընտանիքը 973էն ետք յայտնի չէ, բայց չահեկան է որ մինչեւ տասներկուերորդ դարուն սկիզբները Ատանայի եւ Տարսոնի շրջաններուն մէջ այլափառ ցեղախումբեր կային որոնք Մելեմենճի կը կոչուէին[163]:

Յիշեցինք ուրիշ Հայ մըն ալ որ կայսերական ծառայութեան մէջ մտաւ իններորդ դարուն վերջին քառորդին: Այս Հայը Կուրտիկիոսն (Kourtikios) է, սովորաբար Կուրտիկէս (Kourtikes) յորջորջուած, որ ինչպէս ըսինք, բերդատէրն էր Լոկանայի, զոր կայսրութեան յանձնեց Տեփրիկէի կործանումէն ետք 872ին, եւ իր հայ հետեւորդներով կայսերական ծառայութեան մէջ մտաւ: Այս Կուրտիկէսն է, անտարակոյս,

---

162 Տես ծան. 85 ի մէջ յիշուած աղբիւրները:

163 Mavrogordato, *op. cit.*, LIII.

որ սպաննուեցաւ 894ին երբ հրամանատարներէն մէկն էր բիւզանդական այն բանակին որ ղրկուեցաւ պուլկար Սիմէոնին դէմ[164]: Բայց արդէն իր ընտանիքը հաստատած էր կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ: Որովհետեւ Կուրտիկէս մը, հաւանականաբար, Լոկանայի բերդատէրին որդին, ինչպէս արդէն ըսինք, Կոստանդին Տուկիծի կուսակիցներէն մէկն էր եւ մեռաւ 923ին իշխանութեան տիրելու իր փորձին մէջ[165]: Մանուէլ Կուրտիկէս մը օգնեց Ռոմանոս Լեկապենոսի տապալման 944ին եւ, յետոյ, Կոստանդին Ծիրանեծինի կողմէ պատրիկ եւ կայսերական պահակախումբին պետ (Drungarius) եղաւ[166]: Քանի մը տարի ետք, Միքայէլ Կուրտիկէս մը ծովային հրամանատար մըն էր եւ Վարդաս Սկլերոսին միացաւ Վասիլ Բ.ի դէմ[167]: Այսպէս, ամբողջ տասներորդ դարուն ընթացքին Կուրտիկէս ընտանիքը բաւական կարեւոր դեր մը մը խաղաց կայսրութեան

---

164 Theoph. Continuatus, 358; Cedrenus, 2, 254: Սիմէոնի հետ այս հանդիպումին մասին տես Runciman, *A History of the First Bulgarian Empire*. London, 1930, 144 ff.

165 Cedrenus, 2, 280; Theophanes Continuatus 383.

166 Theophanes Continuatus, 435, 436; Cedrenus, 2, 327.

167 Cedrenus, 2, 424, 427; *Nicephorus Bryennius Commentarii*, ed. A. Meineke, Bonn, 1836, 154, ուր յիշուած է Basil Kourtikes մը:

քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ։ Այս դերը շարունակուեցաւ տասներմէ-կերորդ դարուն ալ։

Տասներորդ դարուն երկրորդ կէսին, արեւելեան ճակատին վրայ բիւզանդական յարձակողականին գագաթնակէտը Անտիոքի գրաւումն է 969ին։ Սուրիական այս համբաւաւոր քաղաքը գրաւեց բիւզանդական զօրավար Միքայէլ Bourtzesը[168]։ Bourtzes Հայ էր։ 976ին Անտիոքի դուքս անուանուեցաւ, բայց շուտով միացաւ Վարդաս Սկլերոսի ապստամբութեան, իրեն հետ բերելով հայկական զօրամաս մը։ Բայց 992ին զինքը նորէն Անտիոքի դուքս կը գտնենք։ Իր ընտանիքը արդէն հաստատուած էր կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ։ Իր երէց որդին արդէն, 976էն ի վեր, գործօն զինուորական հրամանատար մըն էր։ Bourtzes ընտանիքը կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ կարկառուն դիրք մը գրաւեց ամբողջ տասնըմէկերորդ դարուն։ Մասնաւորաբար գործօն դեր մը կատարած ըլլալ կը թուի Ալեքսիս Կոմնէնի իշխանութեան օրով[169]։ Theo–

[168] *Ibid.*, 365—367. Cf. Adontz, *Notes arméno-byzantines*, Byzantion 10 (1935) 184; W. H. Buckler, *Two Gateway Inscriptions*, Byz. Zeitschr. 30 (1929—30) 647—648.

[169] Nicephorus Bryennius, 117; Anna Comnena, *The Alexiad*, ed. B. Leib, 1, 131; 3, 200 ff. Bourtzes *ընտանիքը կը գործածէր Վարդան հայկական անունը*, Comnena, *op. cit.*, 3, 200.

dorakanosները, ուրիշ հայ ընտանիք մը, կայսրութեան զինուորական կեանքին մէջ գործօն դեր մը ունեցած են: Այս ընտանիքին առաջին ծանօթ անդամը պատրիկ Theodorakanosն էր, որ իբրեւ զօրավար մասնակցեցաւ Վասիլ Բ.ի պուլկարական պատերազմներուն: Երբ գործօն կեանքէ քաշուեցաւ 1000–1001ին ծերութեան հետեւանքով, Փիլիպպոպոլիսի կուսակալն էր: Ընտանիքին վերջին ծանօթ անդամը, հաւանականաբար պատրիկ Theodorakanesին թոռը, Կոստանդինն է, որ 1077էն քիչ ետք մեռաւ: Ընդդիմացած է Նիկեփորիս Bryennosին երբ կայսր ըլլալ փորձեց, բռնուեցաւ անոր կողմէ եւ աքսորուեցաւ, եւ աքսորի մէջ մեռաւ: Ընտանիքին միւս երկու ծանօթ անդամները Գէորգ եւ Վասիլ, անտարակոյս պատրիկին զաւակներն էին: Երկուքն ալ կարեւոր հրամանատարութիւններ վարեցին[170]:

Dalassinosները, մէկը տասնըմէկերորդ դարուն ամէնէն կարկառուն բիւզանդական գերդաստաններէն, կրնան նոյնպէս հայկական ծագում ունեցած ըլլալ: Այս ընտանիքին առաջին ծանօթ անդամը Damianosն է, որ Անտիոքի դուքս էր 995ին: 998ին Սարակինոսներուն դէմ կռիւի մը մէջ սպաննուեցաւ: Իր չորս զաւակները կարեւոր դիրքեր

---

[170] Այս ընտանիքին մասին տես Adontz, *Notes Arméno-byzantines*, Byzantion 10 (1935) 161—170.

կը գրաւէին կայսրութեան զինուորական եւ վարչական կազմակերպութեան մէջ: Անոնցմէ մէկը, Կոստանդինը, ժողովրդական դէմք մը եղած ըլլալ կը թուի, որովհետեւ երկու անգամ խորհած են զինքը կայսերական գահը բարձրացնել, առաջին անգամ 1028ին Կոստանդին Ը.ի մահէն եւ դարձեալ 1042ին Միքայէլ Ե.ի տապալումէն ետք: Իր աղջիկը ապագայ կայսր Կոստանդին Տուկիծի կինը եղաւ: Ընտանիքին իգական անդամներէն ուրիշ մը, Տամիանոսի որդի Թէոփիլակտի սերունդէն, Ալեքսիս Կոմնէնի մայրը եղաւ: Գերդաստանին սկզբնական ծննդավայրը Dalassaն էր, որ, ըստ Ադոնցի որ գերդաստանին պատմութիւնը գրած է, հայկական կեդրոն մըն էր Մալաթիոյ արեւելակողմեան լեռնային շրջանին մէջ, որ Claudia կը կոչուէր: Այս հիման վրայ է որ Ադոնց գերդաստանին հայկական ծագում կը վերագրէ: Իր փաստարկութիւնը եթէ բոլորովին համոզիչ չէ, այսու հանդերձ տպաւորիչ է[171]:

Ադոնց գրած է ստուգապէս հայկական ծագումով ուրիշ հայ գերդաստանի մը պատմութիւնը[172]: Տարօնի հայկական գա-

---

[171] *Ibid.*, 171—185.

[172] Adontz, *Les Taronites en Arménie et à Byzance*, Byzantion 9 (1934) 715—738; 10 (1935) 531—555; 11 (1936) 21—42; Նաեւ *Observations sur la généalogie des Taronites*, Byzantion 14 (1938) 407—413.

ւոր կայսրութեան յանձնուեցաւ Գրիգոր եւ Բադրատ (Pancration) եղբայրներուն կողմէ : Փոխարէն անոնց տրուեցան կայսրութեան մէջ ուրիշ կալուածներ : Ի սկզբան դժգոհ այս կարգադրութենէն, տարօնցի եղբայրները միացան Վարդաս Սկլերոսի ապստամբութեան, բայց յետոյ հաշտուեցան Վասիլ Բ.ի հետ, որ անոնց յանձնեց կարեւոր հրամանատարութիւններ : Տարօնցիները հաստատուեցան կայսրութեան դինուորական եւ վարչական կեանքին մէջ : Գրիգորին ընտանիքը մասնաւորաբար բարգաւաճեցաւ : Որդին Աշոտ ամուսնացաւ պուլկար թագաւոր Սամուէլի աղջկան հետ : Աշոտին սերունդին անդամները ամուսնացան Melissenosներուն եւ Կոմնենեաններուն հետ, որոնք տասներմէկերորդ դարուն բիւզանդական ամէնէն կարկառուն ընտանիքներն էին[173] : Ծանօթ է որ անոնք կարեւոր դիրքեր գրաւած են մինչեւ տասներկուերորդ դարուն կէսերը :

Տարօնցիներուն մէկ ճիւղը՝ Թոռնիկին

[173] Նիկիփորոսի Միլիսեննոսի համար, ըստ Bryenniusի Փրանսերէն թարգմանութեան, զոր կատարած է H. Grégoire, կ'ըսուի թէ խնամի էին Bourtzes ընտանիքին իր հօրը կողմէ : Ասկէ պիտի հետեւէր թէ Մելիսսեննոսներն ալ հայկական ծագում ունէին : H. Grégoire, *Nicèphore Bryennios: Les quatre livres des histoires.* Byzantion 23 (1953—1954) 480· սակայն պէտք է դիտել թէ Bryenniusի Bonnի հրատարակութիւն մէջ Μορτίους կայ եւ ոչ թէ Bourtzes.

(Tornikios) *ընտանիքը աւելի երկարատեւ կեանք մը ունեցաւ, մինչեւ տասնըչորսերորդ դարուն սկիզբը զինուորական եւ վարչական կարեւոր պաշտօններ վարելով: Առաջին անգամ այս ընտանիքին անդամներուն կը հանդիպինք* 945*ին, երբ Նիկողոս եւ Լեւոն Թոռնիկեանները օգնեցին Կոստանդին Ծիրանեծինին, դահէն հեռացնելու համար Լեկապենոսեանները: Մինչեւ տասնըմէկերորդ դար, սակայն, չենք հանդիպիր այս ընտանիքին անդամներուն որ կարեւոր զինուորական պաշտօններ վարած ըլլան:* 1047*ին անոնցմէ մէկը Լեոն Թոռնիկիոս, փորձեց դահուն տիրել: Իր ձախողանքը նուազ հերոսական էր քան ուրիշ Հայու մը, համբաւաւոր զօրավար Գէորգ Մանիակէսի ձախողութիւնը· Մանիակէս քանի մը տարի առաջ նոյն փորձը կատարած էր*[174]*: Այն Յովհաննէս Թոռնիկիոսը որ կայսերական ոյժերուն օգնեց Վարդաս Սկլերոսի ապստամբութեան ատեն կը պատկանէր ընտանիքին վրացական ճիւղին, որ ծագումով նոյնպէս հայական էր*[175]*:*

---

174 Adontz, *Les Taronites à Byzance*. Byzantion 11 (1936) 30—42.

175 Paul Peeters, *Un Colophon géorgien de Thornik le moine*. Anal. Boll. 50 (1932) 370—371; A. Adontz, *Tornik le moine*. Byzantion 13 (1938) 143—164. But cf. M. Tarchnisvili, *Die Anfänge der schriftstellerischen Tätigkeit des hl. Euthymius und der Aufstand von Bardas Skleros*. Oriens Christianus 38 (1954) 117. *Տես նաեւ* R. P.

Վարդաս Սկլերոսի ապստամբութեան ատեն անոր կուսակիցներուն մէջ կը գըտնուէր Sachakios Vrachamios անուն մէկը: Աղբիւրի մը համաձայն, այդ ատեն բանակի զօրավար մըն էր: Իսկ ուրիշ աղբիւրի մը համաձայն կարեւոր պաշտօնատան մը պետը: Ամէն պարագայի մէջ, կարեւոր անձնաւորութիւն մըն էր որ Յովհաննէս Զմշկիկի օրով իսկ գործօն ծառայութեան մէջ էր: Ծանօթ են նաեւ նոյն ընտանիքէն ուրիշ անձեր, որոնք կարեւոր պաշտօններ կը վարէին, բայց մեր տեղեկութեանց բոլոր աղբիւրները քանի մը կնիքներ են միայն, որով կարելի չէ մեծ բան մը ըսել անոնց մասին: Կայ, սակայն, գրական աղբիւրներուն մէջ, կարկառուն դէմք մը՝ Փիլառտոս, որ Մանազկերտի բիւզանդական աղէտէն ետք (1071) իրեն համար իշխանապետութիւն մը հիմնեց Տաւրոսեան լեռներուն մէջ, որ հետզհետէ զօրանալով տարածուեցաւ Մելիտինէի, Անտիոքի եւ Եդեսիոյ վրայ: Իր զօրքերը ամբողջովին Հայերէ կը բաղկանային: Vrachamios ընտանիքը, աւելորդ է ըսել, հայկական ծագում ունէր[176]:

Ուսումնասիրուած շրջանին տեւողութեան ընթացքին, կայսերական կառավարու-

---

Blake, *Some Byzantine Accounting Practices.* Harvard Studies in Classical Philology 51 (1940) 14—16.

[176] Adontz, *Notes arméno-byzantines.* Byzantion 9 (1934) 377—382.

*թեան մէջ կարելի է յիշել հայկական ծագումով ուրիշ անձնաւորութիւններ ալ։ Օրինակի համար, Մխիթարները* (Machitar), *որոնք տասներորդ դարուն վերջին քառորդին կայսերական ծառայութեան մէջ կը գտնուէին — առաջին Մխիթարը կը թուի Լիւկանտոսի կուսակալ եղած ըլլալ* 973*էն ետք — եւ շարունակեցին ծառայել մինչեւ տասնըմէկերորդ դարուն վերջը*[177], *կամ* Kekaumenos*ները, որոնք երկու կարեւոր դէմք տուին տասնըմէկերորդ դարուն՝* Katakalon*ը, իր ժամանակին ամէնէն կարող բիւզանդական զօրավարներէն մէկը, եւ* Kekaumenos *հեղինակը, կարող եւ իմաստուն նահանգային վարիչը, որուն գործը անկասկած ամէնէն ինքնատիպ քաղաքագիտական աշխատութիւնն է բիւզանդական գրականութեան մէջ*[178]*։ Կարելի է յիշել նաեւ վրացահայ ընտանիքները* Apocapes*ի եւ* Pa–

[177] *Ibid.*, 367—371.

[178] M. Gyóni, *L'oeuvre de Kekaumenos, sources de l'histoire romaine*, Rev. d'Hist. Comparée, nouvelle série, 3 (1945), 109—125: Katakalon*ի եւ հեղինակ* Kekaumenos*ի միջեւ առնչութիւնը շատ յստակ չէ։ Այս խնդրին քննութիւնը տես* Gyóni (op. cit., 126—128)։ Kekaumenos*ներուն հայկական ծագումին մասին տես նաեւ* Paul Lemerle, *Prolégomènes à une édition critique et commentée des «Conseils et Récits» de Kekaumenos* (= Acad. Royale de Belgique. Classe des Lettres et des Sciences Morales et Politiques, Mémoires, 56). Brussels, 1960, 20 ff.

curianosի, որոնց անդամները տասնըմէկերորդ դարուն կարեւոր պաշտօններ վարած են[179]: Սակայն բաւական բան ըսուեցաւ արդէն ցոյց տալու համար թէ որքան կարեւոր էր հայ տարրը այն անձնաւորութեանց մէջ որոնք կայսրութեան ճակատագիրը վարեցին անոր պատմութեան ամենափայլուն շրջանին:

Գ.

Հայ թագաւորներու եւ իշխաններու հետ իրենց քաղաքականութեան մէջ Բիւզանդացիները հետեւեցան ուղեգիծի մը որ կը ստիպէր Հայերը լքել իրենց երկիրները կայսրութեան ուրիշ մասերուն մէջ հողերու,

[179] Apocapesի ընտանիքին մասին տես Vryonis, *The will of a Provincial Magnate, Eustathius Boilas (1059)*, Dumbarton Oaks Papers 11 (1957) 274 f.; Pacurianusի ընտանիքին ամէնէն նշանաւոր անդամն էր Գրիգոր († 1086), որ շատ կարեւոր պաշտօններ վարեց եւ որուն շատ ընդարձակ սեփհականութիւնները մանրամասնօրէն ծանօթ են: Louis Petit, *Typikon de Grégoire Pacourianos pour le monastère de Pétritzos (Bačkovo) en Bulgarie* Bnz. Vrem., 11, (Supplément) 1 (1904): Գրիգորին ծագումին եւ ասպարէզին մասին տես էջ VI յջդ.: Թէեւ բիւզանդական կայսրութեան ծառայութեան մէջ էր եւ մատոյց օգտակար ծառայութիւններ, իր վրացահայ ծագումը երբեք չմոռցաւ: Pétritzosի վանքը, զոր հիմնեց, միայն վրացի աբեղաներուն յատուկ էր: Յոյներուն մասնաւորապէս արգիլուած էր անոր միաբանութեան մաս կազմել: Ibid., 44:

ինչպէս նաեւ տիտղոսներու եւ պաշտօններու փոխարէն: Արդիւնաւոր ուղեգիծ մըն էր այս, գէթ ինչ ինչ պարագաներու մէջ, կայսրութեան սահմանագլուխը դէպի արեւելք յառաջացնելու եւ միեւնոյն ժամանակ ըմբոստ տարրերը կայսրութեան զինուորական եւ քաղաքական կեանքին մաս կազմել տալու համար: Այս քաղաքականութեան հանդիպատես կ՚ըլլանք նոյն իսկ Վասիլ Ա.ի օրով, երբ, ինչպէս ըսուեցաւ, Հայազգին Կուրտիկոս, որ Լոկանան կայսրութեան յանձնեց, կայսրութեան զինուորական կազմակերպութեան մէջ պաշտօն մը ստացաւ: Նոյնը կը տեսնենք Լեւոն Զ.ի օրով երբ ուրիշ հայ պետ մը՝ Մանուէլ՝ Դեգիսը յանձնեց կայսրութեան, ինչպէս ըսինք: Մանուէլ մեկնեցաւ Կ. Պոլիս, ուր արժանացաւ մեծ պատիւներու եւ իր երկու որդիներուն նոր հողեր տրուեցան Տրապիզոնի շրջանին մէջ եւ միւս երկուքին՝ զինուորական կարեւոր հրամանատարութիւններ: Այս քաղաքականութեամբ է որ Տարօնի շրջանը վերջնականապէս կցուեցաւ կայսրութեան 966ին: Սեպհականազուրկ իշխանները միշտ գոհ չէին նոր կարգադրութիւններէն, բայց, սովորաբար, ինչպէս վերը դիտել տուինք Տարօնցիներուն մասին խօսելու ատեն, մաս կը կազմէին կայսրութեան զինուորական եւ քաղաքական կեանքին:

Այս քաղաքականութիւնը աւելի լայնօրէն կիրարկուեցաւ Վասիլ Բ.ի իշխանու-

թեան առեն եւ արդիւնքը եղաւ գրեթէ ամբողջ Հայաստանի կցումը բիւզանդական կայսրութեան: Շատ մը պարագաներու մէջ, յանձնումները ճնշումի հետեւանք էին եւ շատ յաճախ հարկ կ'ըլլար զինուորական միջոցներու դիմել կցումը իրականացնելու համար:

Առաջին կարեւոր կցումը եղաւ Հայկական ծագումով վրացի իշխանին՝ Դաւիթ կուրապաղատի երկիրը, որուն կեդրոնական մասը կը կազմէր Տայք կոչուած շրջանը, բայց իր սահմանները կը տարածուէին Վանայ լիճին հիւսիսակողմէն՝ Մանազկերտէն մինչեւ Երզրում վերին Եփրատի վրայ եւ դէպի հիւսիս մինչեւ Կարսի հիւսիս-արեւմըտեան կողմը Kolaի եւ Ardansի գաւառը: Դաւիթ օգնած էր Վասիլ Բ.ին Վարդաս Սքլերոսի ապստամբութեան առեն. բայց քանի մը տարի ետք Վարդաս Փոկասի կողմը անցած էր երբ վերջինը ապստամբեցաւ նոյն կայսեր դէմ (987): Անտարակոյս յաղթական կայսեր վրէժխնդրութենէն ազատելու համար է որ Դաւիթ զայն իրեն ժառանգորդ ըրաւ, այնպէս որ երբ 1000ին մեռաւ, ըստ երեւոյթին, թերեւս կայսեր թելադրութեամբ թունաւորուելով, իր երկիրը կցուեցաւ կայսրութեան եւ Իբերիոյ թեմը կազմեց[180]:

---

[180] Honigmann, *Die Ostgrenze des Byzantinischen Reiches*, 155 ff.; R. Grousset, *Histoire de l'Arménie*, 529—535; Schlumberger, *L'épopée*

*Տայքի կցումին հետեւեցաւ քանի մը տարի ետք Վասպուրականի կցումը: Վասպուրականը, որ կը տարածուէր Վանայ լիճէն մինչեւ Երասխ եւ այն լեռնաշղթան որ այսօր Թուրքիան կը բաժնէ Իրանէն, կայսրութեան յանձնուեցաւ ըստ երեւոյթին, որովհետեւ անոր թագաւորը՝ Սենեքերիմ այլեւս ի վիճակի չէր դիմադրելու արտաքին եւ ներքին զանազան ճնշումներու, մասնաւորաբար սելճուքեան Թուրքերուն ճնշումին: Նոր կցուած երկիրը կապետանութեան, այսինքն սահմանագլխային նահանգի մը վերածուեցաւ*[181]*:*

*Հազիւ թէ Վասպուրականի կցումը կատարուած էր երբ Վասիլ Բ կտակ մը ստացաւ, որուն տրամադրութեանց համաձայն հայկական ուրիշ կարեւոր երկիր մը կցուեցաւ կայսրութեան: Կտակարարը Անիի՝ Մեծ*

---

*Byzantine*, 2. Paris, 1900, 159—165. *Բայց տես* Z. Avalichvili *որ կը ժխտէ թէ Վասիլ Բ. կամ Դաւիթի շուրջը գտնուող բիւզանդասէր մարդիկ Դաւիթի մահուան մէջ դեր մը ունեցած ըլլան.* La *succession du Curopalate David d'Ibérie, dynaste de Tao*. Byzantion 8 (1933) 190 ff.

[181] *Թովմաս Արծրունիի Շարունակողը*, *Histoire des Ardzrouni*, tr. M. Brosset, *Collection d'Historiens Arméniens*, 1. St. Petersburg, 1874, 248; Samuel d'Ani, *Table Chronologique*, tr. Brosset, *Collection* . . ., 2, 1876, 443; Cedrenus, 2: 464; Grousset, *op. cit.*, 553 ff.; Honigmann, *Die Ostgrenze* . . ., 168 ff.; Schlumberger, *Epopée* . . ., 2: 500 ff.

Հայքի թագաւոր Սմբատն էր, որ օգնած ըլլալով վրացական նորածին ֆէոտալ միապետութեան թագաւոր Գէորգիի, բիւզանդական կայսեր ծրագիրներէն խորապէս կը մտահոգուէր: Կտակին համաձայն, Սմբատ պիտի շարունակէր իր գահուն վրայ մնալ մինչեւ իր մահը, բայց, յետոյ, Բիւզանդիոնի կայսրը պիտի ըլլար իր յաջորդը: Երբ Սմբատ մեռաւ (1041) իր յաջորդը եւ եղբօրորդին Գագիկ, պատրաստ ըլլալով հանդերձ ընդունիլ կայսեր գերիշխանութիւնը, մերժեց իր թագաւորութիւնը կայսեր յանձնել: Բայց իր վրայ ի գործ դրուած ճնշումները ի վերջոյ այնքան ծանրացան որ ստիպուեցաւ գահէն հրաժարիլ: Այսպէսով, Անի եւ Մեծ Հայքի թագաւորութիւնն ալ կայսրութեան կցուեցաւ 1045ին[182]: Նոյն տեններ, Գրիգոր Պահլաւունի, հայ ուսումնագէտ մը որ սովորաբար Գրիգոր Մագիստրոս անունով ծանօթ է, կայսրութեան թողուց Բջնիի բերդը, որ Անիի արեւելքը Հրազդան գետին վրայ կը գտնուէր[183]:

Այս կերպով գրեթէ ամբողջ Հայաստան

---

182 Matthew of Edessa, *op. cit.*, 78. Aristakes of Lastivert, *Histoire d'Arménie*, tr. E. Prud'-homme, Paris, 1864, 69—70; Cont. de Thomas Ardzrouni, *op. cit.*, 248; Cedrenus, 2, 559; Honigmann, *Die Ostgrenze* . . ., 175, n. 3; Grousset, *op. cit.*, 556 ff., 577 ff.

183 Aristakes of Lastivert, *op. cit.*, 67—68; Honigmann, *Die Ostgrenze* . . ., 175.

*անբաժան մէկ մասը կազմեց բիւզանդական կայսրութեան*[184]*: Կցուած սահմաններուն բնակիչները, բնականաբար, մեծամասնութեամբ Հայ էին: Կային նաեւ Վրացիներ եւ թերեւս ուրիշ ազգային տարրեր, բայց ոչ Յոյներ: Գէթ այս տպաւորութիւնը կը կրենք Կապադովկիոյ թեմէն յայտնօրէն յունախօս եւ 11րդ դարուն կէսերուն Տայք գաղթած մէկու մը խօսքերէն: «Նժդեհ եղայ, կը գրէ, եւ ծննդավայրէս մէկ ու կէս ամիս հեռու տեղ մը գացի: Եւ բնակութիւն հաստատեցի օտար ազգերու մէջ որոնք օտար կրօնք եւ լեզու ունին»: Օտար ազգերուն մէջ, որոնց կ'ակնարկէ այս տողերուն հեղինակը, միայն Հայերը կը յիշէ անուանապէս*[185]*:*

*Հայ իշխանները, որոնց հողերը կցուած էին, հաստատուեցան կայսրութեան մէջ ուրիշ հողերու վրայ: Այսպէս, Վասպուրականի նախորդ թագաւորը Սենեքերիմ, իր չորս որդիներուն հետ հաստատուեցաւ Սեբաստիա, ուր ընդարձակ կալուածներ ստացաւ: Ուրիշ կալուածներ տրուեցան իրեն՝ Լարիսա Վերին Թոխմա-սուի վրայ, Ավարա կամ*

---

[184] Matthew of Edessa, *op. cit.*, 126; Honigmann, *Die Ostgrenze* . . ., 188, n. 6.

[185] Vryonis, *The will of a Provincial Magnate* . . ., 264, 265: *Յունարէն ընծայական արձանագրութեանց գոյութիւնը նոյն սահմաններուն մէջ, որոնց կը վերաբերի այս գրուածքը, նշանակալից կերպով չ'այլայլեր այն ցեղային կացութիւնը զոր կը մատնանշէ:* Cf. Lemerle, *op. cit.*, 29 ff.

Ամարա, զոր Հոնիկման Սեբաստիա–Մելիտինէ ճանապարհին վրայ կը դնէ, վերջին քաղաքէն քիչ մը հիւսիս–արեւելք, եւ Գաբատոնիա (Gabadonia), այժմեան Տեվելի՝ Կեսարիոյ հարաւակողմը[186]: Անիի նախկին Թագաւոր Գագիկ ստացաւ ընդարձակ կալուածներ Կապադովկիոյ, Խարսիանոնի եւ Լիկանդոսի թեմերուն մէջ[187]: Գրիգոր Պահլաւունի եւ Գագիկ Կարսեցի ալ նոյն ձեւով փոխարինութիւններ ստացան: Գրիգոր Պահլաւունիի տրուած հողերը կը գտնուէին Միջագետքի թեմին մէջ[188], իսկ Գագիկ Կարսեցիի հողերը զանազան տեղեր, ոմանք Ծամնդաւ, ուրիշներ Լարիսսա եւ ուրիշներ ալ Ամասիա եւ Կոմանա: Գագիկ իր բնակութիւնը հաստատեց Ծամնդաւ[189]: Հայ իշխանները պատուեցան բարձր տիտղոսներով ալ: Սենեքերիմ պատրիկ կոչուեցաւ[190], Գագիկ Անեցի՝ մագիստրոս[191], Գրիգոր Պահլաւունի՝ մագիստրոս եւ դուքս Միջագետ-

---

186 Cedrenus, 2, 464; Honigmann, *Die Ostgrenze* ..., 173, n. 4.

187 Cedrenus, 2, 559; Matthew of Edessa, *op. cit.*, 78; Honigmann, *Die Ostgrenze* ..., 175, n. 3.

188 Aristakes of Lastivert, *op. cit.*, 67—68; Honigmann, *Die Ostgrenze* ..., 175.

189 Matthew of Edessa, *op. cit.*, 126; Honigmann, *Die Ostgrenze* ..., 188, n. 6.

190 Cedrenus, 2, 464; Aristakes of Lastivert, *op. cit.*, 31, n. 4.

191 Cedrenus, 2, 559.

քի, եւ յաւելուածաբար իրեն յանձնուեցաւ Տարօնի, Սասունի եւ Վասպուրականի մէկ մասին կառավարութիւնը[192] :

Տեղահանուած հայ իշխանները իրենց նոր բնակավայրերը բերին իրենց հետ, բայց ի իրենց ընտանիքներէն, ստուարաթիւ հետեւորդներ, առաւելապէս բաղկացած իրենց ազնուականութենէն եւ անոնց հետեւորդներէն: Ազնուականները, որ իրենց իշխաններուն հետեւեցան, այնքան բազմաթիւ էին իրօք որ կ՚ըսուի թէ անոնց մեկնումով Հայաստան պարպուեցաւ իր բնակչութեան ամէն քաջասիրտ տարրերէն: «Յոյները, կը գրէ Մատթէոս Ուռհայեցի, ցրուեցին Հայաստանի ամէնէն քաջարի զաւակները[193]»: Անոնք միշտ ջանացին Արեւելքէն հեռացնել բոլոր քաջասիրտ մարդիկը եւ քաջ զօրավարները[194]»: Այս տեղափոխութեանց առեն գաղթած ժողովուրդին թիւը կարելի չէ տալ: Զամչեան հայ պատմագիրը Սենեքերիմի հետ գաղթողներուն թիւը 400,000 կը դնէ[195] եւ այս թիւը ուրիշներն ալ կրկնած են[196], բայց մեզի հասած աղբիւրները այս

---

192 Aristakes of Lastivert, *op. cit.*, 67—68; Honigmann, *Die Ostgrenze*. . ., 175.

193 Matthew of Edessa, *op. cit.*, 113.

194 *Ibid.*, 114.

195 Զամչեան, Բ, 903: Օգնութեամբ Պրոֆ. Սիրարփի Տէր Ներսէսեանի:

196 M. Brosset ի Lebeau-Saint-Martin, *Histoire du Bas-empire* 14. Paris, 1838, 211. Tour-

*Թիւր չեն հաստատեր։ Միակ թիւր տուած է միջնադարեան հայ պատմագիր մը, որ կ՚ըսէ թէ Սենեքերիմի հետ գաղթեցին 14·000 հայրենակիցներ, առանց հաշուելու կիներն ու մանուկները*[197]*։ Բայց ինչ որ ալ ըլլայ վերջնական թիւը, տարակոյսէ զերծ է թէ մեծ էր թիւը այն Հայերուն որոնք իրենց ծննդավայրը լքելով կայսրութեան մէջ ուրիշ տեղեր հաստատուեցան։ Գրեթէ այդ ատենները սկսան սելճուքեան Թուրքերուն յաճախադէպ ասպատակութիւնները, ինչ որ գաղթականութեան նոր զարկ մը տուաւ, եւ իրենց ծննդավայրերէն հեռանալու հայկական շարժումը զանգուածային գաղթի մը հանգամանքը ստացաւ։ Այս շարժումին նկարագրութիւնները անտարակոյս չափազանցուած են քրոնիկագիրներուն կողմէ*[198]*, բայց, այս չափազանցութիւնները զեղչելով հանդերձ, անոնք ընթերցողին վրայ կը թողուն խոր տպաւորութիւն մը։ Հազարաւոր Հայեր լքեցին իրենց հայրենիքը եւ գացին հաստատուիլ հիւսիսային Սուրիա, Կապադովկիա եւ Կիլիկիա, ուր դէպի 11րդ դարուն վերջերը հիմը դրին հայկական նոր իշխանապետութիւններու եւ, 12րդ դարուն վերջերը, Փոքր Հայաստանի Ֆէոտալ թագաւորութեան։*

---

nebize, *Histoire politique et religieuse de L’Arménie*, 124.

[197] *Թովմաս Արծրունիի Շարունակողը,* էջ 248։

[198] *Օրինակի համար Ուռհայեցի,* 182։

Երբ Հայերը սկսան Կապպադովկիա, Կիլիկիա եւ հիւսիսային Սուրիա գաղթել 10րդ դարուն կէսէն ատեն մը ետք, անտարակոյս, ինչպէս արդէն դիտել տուինք, քաջալերուած էին կայսերական իշխանութենէն, որ ջերմօրէն կը փափաքէր մասնաւորապէս Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ մէջ Սարակինոսներէն նոր գրաւուած զանազան քաղաքներուն մէջ բնակչութիւն հաստատել, որովհետեւ այս քաղաքներուն բնակչութիւնները ծանր կորուստներ կրած էին մահմետականներէն շատերուն մեկնումին հետեւանքով: Անոնց տեղահանութիւնը 11րդ դարուն ծառայեց նման նպատակի մը, բայց անոր սկզբնական նպատակն էր հայկական նորագրաւ հողերուն խաղաղ տիրապետութիւնը, հեռացնելով այն զանազան տարրերը որ կրնային խռովութիւն յարուցանել: Բիւզանդիոնի աւանդական քաղաքականութիւնն էր այս, որ յաճախ կիրարկուած էր: Այս անգամ, սակայն, այս քաղաքականութիւնը գլխաւոր ազդակը եղաւ Փոքր Ասիոյ վրայ բիւզանդական իշխանութեան կործանման: Հայերուն տեղափոխութիւնները, այնպիսի ժամանակ մը ուր իրենց հայրենիքը կ'ենթարկուէր սելճուքեան կըրկնուած ասպատակութիւններուն, հեռացուց տարր մը որ, կռուելով իր հայրենիքին համար, կրնար կասեցնել այս ասպատակութիւնները: Բայց աւելի կարեւորը այն է որ այս հայկական տեղահանութիւնները տկա–

բացուցին կայսրութեան դիրքը այն շրջաններուն մէջ ուր Հայերը հաստատուեցան։ Որովհետեւ այս շրջաններէն ոմանց, ինչպէս, օրինակի համար, Կապպադովկիոյ մէջ անոնց տեղաւորումը խանգարեց ընկերային եւ ցեղային կազմը եւ այսպէսով ստեղծեց լուրջ ձգտումներ, մինչ ուրիշ տեղեր, ինչպէս Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ մէջ, նորահաստատ Հայերը պատրաստ էին անջատողական շարժումներ ստեղծել երբ պատեհութիւնները թոյլատու ըլլային[199]։ Ինչ որ մասնաւորաբար նպաստեց որ նոր տարրին եւ ժողովուրդին մնացեալ մասին միջեւ ձգտումը աճի, եկեղեցական խնդիրներն էին, զոր հայկական հողերուն կցումը եւ անոր հետեւանքով Հայոց գաղթը ստեղծած էին։ Կայսրութեան մէջ միշտ հերետիկոսական խմորումներ գոյութիւն ունեցած էին, բայց օրթոտոքսութիւնը, իր վերջնական բիւրեղացած ձեւով, ի վերջոյ եղած էր կայսրութեան միացուցիչ ուժերէն մէկը – յունարէն լեզուն եւ կայսերական աւանդութիւնը միւս երկու միացուցիչ ուժերն էին – բայց հիմա առաջին անգամ ըլլալով, Եգիպտոսի եւ Սուրիոյ կորուստէն ետք 7րդ դարուն, գոյութիւն ունէր ուժեղ կրօնական

---

[199] Հայոց ծաւալումի մասին տես Attaliates, 96—97, 137; Cedrenus, 2, 626; Ուռհայեցի 182, Michael Syrus, 3, 133, 173, 187, 198; Ներսէս Լամբրոնացի ի *Recueil des Historiens des Croisades: Documents Arméniens* 1. Paris, 1869, 576.

փոքրամասնութիւն մը, որ գերակշիռ էր կայսրութեան ինչ ինչ շրջաններուն մէջ եւ շատ հզօր՝ ուրիշ տեղեր: Թէ՛ Եկեղեցիին եւ թէ պետութեան խոր մտահոգութիւն կը պատճառէր այս կացութիւնը, որուն հետեւանքով ճնշում ի գործ դրուեցաւ Հայերուն վրայ որ ընդունին օրթոտոքս տեսակէտը: Բայց Հայերը, որոնց մշակութային եւ ազգային զարգացումը հզօր կերպով կապուած էր իրենց կրօնական հաւատալիքներուն եւ հրահանգներուն հետ, յամառօրէն դիմադրեցին: Հետեւանքը այն եղաւ որ զանոնք համոզելու համար բիւզանդական Եկեղեցիին ջանքերը զանոնք վերածեց կասկածելի հպատակներու[200]: Բիւզանդական բանակին մէջ հայկական տարրը միշտ գերակշիռ էր ինչպէս նախապէս, բայց այլեւս կարելի չէր անոր հաւատարմութեան վստահիլ[201]:

---

[200] Յոյներուն եւ Հայերուն միջեւ կրօնական ձգտումին մասին տես այժմ Speros Vryonis, *Byzantium: The Social Basis of Decline in the Eleventh Century*, Greek, Roman and Byzantine Studies 2 (1959) 169 ff. Պէտք է սակայն յիշել տալ թէ նոյն իսկ կայսրութեան արեւելեան մասին մէջ Հայեր կային, Ծաթերը, որ Կ. Պոլսոյ օրթոտոքսութիւնը կ'ընդունէին: *Ibid.*, p. 169, n. 21; I. Doens, *Nicon de la Montagne Noire*, Byzantion 24 (1954) 134; P. Peeters, *Orient et Byzance, Le Tréfonds Oriental de l'hagiographie byzantine*. Brussels, 1950, 163.

[201] Մանազկերտի մէջ բիւզանդական բանակին հայկական զօրաբաժինը դասալիք եղաւ, Michael Syrus, *op. cit.*, 3, 169; cf. Attaliates, 113.

Հաւատարապէս խնդրական էր քաղաքային բնակչութեան հաւատարմութիւնը [202] : Կա– րեւոր գինուորական պաշտօններու տէր Հայերուն թիւը 11րդ դարուն դեռ այնքան ուշադրաւ է որքան ուրիշ ոեւէ դարու մէջ [203] : Եւ եթէ անոնցմէ շատերը վերջնա– կանապէս չձուլուեցան կայսրութեան ընկե– րային, քաղաքական եւ գինուորական կեան– քին մէջ, ինչպէս ձուլուած էին նախապէս, պատճառը գլխաւորաբար Փոքր Ասիոյ մէջ քաղաքական պայմաններուն փոխուած ըլ– լին էր :

Դ.

Մանազկերտի ճակատամարտին մէջ 1071ին բիւզանդական բանակին պարտու– թիւնը Սելճուքեաններէն եւ Բիւզանդիոնի մէջ անոր յաջորդող քաղաքային պատե– րազմները պատճառ եղան որ կայսրութիւնը վերջնականապէս կորսնցնէ արեւելեան եւ

---

202 Ռոմանոս Դ. Տիոժէն մասնաւոր միջոցներ ձեռք առաւ իր զօրքը պաշտպանելու համար Հայոց յարձակումներուն դէմ. Attaliates, 135: Հայերէն ոմանց Թուրքերուն հանդէպ բարեկամական վարմուն– քին մասին տես Irène Melikoff. La geste de Melik Danismend. Étude critique du Danișmend-name. I. Introduction et traduction, (Paris, 1960, 90, 126 բայց մասնաւորաբար 129:

203 Cf. J. Laurent, *Byzance et les Turcs Seldjoucides dans l'Asie occidentale jusqu'en* 1081. Nancy, 1913, 38 ff.

*կեդրոնական Փոքր Ասիան։ Բնականաբար, այս կորուստին մաս կը կազմէին Հայաբնակ շրջանները։ Իրաւ է որ առեն մը կայսրութեան անուանական իշխանութեան տակ մնաց ընդարձակ հողամաս մը, որ կը տարածուէր կիլիկեան Տաւրոսէն մինչեւ վերին Պիւրամոսի (Ճայհան) լեռնային երկիրը Ալպիստանի եւ Մարաշի շուրջ եւ այդտեղէն դէպի արեւելք կայսրութեան Միջագետքի շրջանները պարփակելով Մելիտինէն, Րոմանուպոլիսը եւ Եդեսիան, ինչպէս նաեւ Սուրիան Անտիոքով։ Այս սահմաններուն մէջ է որ, ինչպէս կը յիշէ ընթերցողը, Հայերը, որոնք իրենց ծննդավայրերը թողած էին 10րդ դարուն վերջերը եւ 11րդ դարուն տեղի ունեցած մեծ գաղթերուն առեն, հաստատած էին իրենց բնակութիւնը։ Այս հողամասը փրկած էր Փիլառտոս, որ Մանազկերտի ճակատամարտին մէջ կայսերական ծառայութեան մէջ էր եւ մեծ Դոմեստիկ տիտղոսը կը կրէր։ Փիլառտոս ի սկըզբան իբրեւ անկախ իշխան մը գործեց, բայց, 1078էն սկսեալ կը թուի բիւզանդական կայսեր գերիշխանութիւնը ճանչցած ըլլալ եւ առոր փոխարէն ստացած ըլլալ կուրապաղատ տիտղոսը[204]։ Սակայն շուտով քայքայուեցաւ իր իշխանութիւնը։ Թուրքերը Անտիոքը գրաւեցին 1084ին․ Եդեսիա եւ*

---

[204] *Փիլարտոսի մասին* J. Laurent, *Byzance et Antioche sous le curopalate Philarète*, Rev. des Et. Arméniennes 9 (1929) 61—72.

Մելիտինէ առեն մը եւս կառավարուեցան Հայ պետերու կողմէ, որոնք բիւզանդական տիտղոսներ կը կրէին, բայց իրականութեան մէջ կայսրութեան հետ կապ չունէին: Սակայն այս երկու քաղաքներն ալ ի վերջոյ կորսուեցան: Եդեսիան գրաւեցին Խաչակիրները Պաղտինի օրով 1098ին[205]. Մելիտինէ գրաւուեցաւ Տանիշմենտեան Թուրքերուն կողմէ 1101ին[206]: Միայն Կիլիկիոյ մէջ, ուր ուրիշ հայ պետեր հաստատուած էին[207], Բիւզանդացիները, Կոմնենեաններուն օրով, 12րդ դարուն յաջողեցան իրենց իշխանութիւնը վերահաստատել, բայց նոյն իսկ այս տեղ, թէեւ հայ պարոնները անոնց բանակներուն մէջ կը կռուէին եւ Հայերը անոնց կայսերը «մեր կայսրերը» կը յորջորջէին[208],

---

205 J. Laurent, *Des Grecs aux Croisés, Etude sur l'histoire d'Edesse entre 1071 et 1098*, Byzantion 1 (1924) 367—449.

206 Honigmann, *Malatya*, The Encyclopaedia of Islam 3 (1936) 195.

207 Sempad, *Chronique de royaume de la Petite Arménie*, tr. E. Dulaurier, *Recueil des Historiens des Croisades: Documents Arméniens* 1. Paris, 1869, 619.

208 Gregory the Priest, *Chronique*, tr. Dulaurier, *Ibid.*, 154. *Նաեւ նոյն էջին վրայ, ծան. 2, կը պարունակէ ցանկը ուրիշ աղբիւրներու, որոնց համաձայն Կիլիկիոյ Հայերը ճանչցած են կայսրութեան գերիշխանութիւնը: Հմմտ.* Sirarpie Der Nersessian, «The Kingdom of Cilician Armenia», in *A History of the Crusades*, volume II, *The Later*

չէին, հայ բնակչութեան վրայ անոնց տիրապետութիւնը խախուտ էր:

Կարելի է, հետեւաբար, ըսել թէ Մանազկերտի ճակատամարտը եւ անոր հետեւանքով արեւելեան եւ կեդրոնական Փոքր Ասիոյ կորուստը վերջ տուաւ այն մեծ դերին զոր, 11րդ դարուն վերջաւորութենէն սկսեալ, Հայերը խաղացած էին կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մէջ: Բայց Հայերը չարունակեցին կայսրութեան մէջ ապրիլ մինչեւ վերջը[209]: Հայկական երկու գաղութ, օրինակի համար, ծանօթ են գոյութիւն ունեցած ըլլալ արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ 13րդ դարուն: Մէկը կը գտնուէր Զմիւռնիոյ մօտերը, միւսը Abydosի շուրջը եւ Սկամանդրի հովիտին մէջ[210]: Այս երկու գաղութներուն ծագու-

---

*Crusades* 1184—1311, edited by R. L. Wolff and H. W. Hazard (Philadelphia, 1962), 630—659.

[209] Փոքր Ասիոյ թրքական գրաւումը եւ կայսրութեան քաղաքական անկումը բնաւ չդադրեցուց Հայերու գաղթը դէպի յունախօս երկիրները: Գիտենք օրինակի համար, թէ 1414ին Տրապիզոնէն, Սեբաստիայէն եւ շրջակայքէն ութսուն հայ ընտանիք Վենետիկցիներէն արտօնութիւն ստացան Կրետէ հաստատուելու համար: Freddy Thiriet, *La Romanie Vénetienne au Moyen Age* (Paris, 1959), 414 f; նաեւ Thiriet, *Régestes de délibérations du Sénat de Venise concernant la Romanie*, II (Paris, 1959), 120, no. 1516.

[210] P. Charanis, *On the Ethnic Composition of Byzantine Asia Minor in the Thirteenth Cen-*

մին մասին որոշ բան մը ըսել կարելի չէ։ Այն որ Զմիւռնիոյ մօտերը կը գտնուէր կրնայ հին ըլլալ, թերեւս Prieneի մօտերը հաստատուած գաղութէն, որուն գոյութիւնը 10րդ դարուն ծանօթ է։ Այն որ Abydosի շուրջը եւ Սկամանդրի հովիտին մէջ հաստատուած էր, դատելով այն բուռն ատելութենէն զոր կը տածէին Յոյներուն հանդէպ, կրնայ աւելի նոր ըլլալ, թերեւս կազմուած՝ ուրիշ տեղէ մը փոխադրուած Հայերէ, օրինակի համար, այն տեղահանութենէն զոր Յովհաննէս Բ Կոմնենոս կատարեց երբ գրաւեց Անազարբան 1138ին[211]։ Երբ 1204ին Կ. Պոլսոյ անկումէն ետք Henri de Flandres Փոքր Ասիա անցաւ փորձելով զայն գրաւել յօգուտ լատին կայսրութեան, այս գաղութին Հայերը անոր դրօշին տակ փութացին հաւաքուիլ եւ օգնեցին որ գրաւէ Abydosը, զոր յանձնեց հայկական կայազօրքի մը։ Երբ, սակայն, քիչ մը ետք, Henri Եւրոպա անցաւ, այն Հայերը որ անոր կողմնակից եղած էին, նոյնպէս Եւրոպա անցան։ Անոր հետեւեցան, որովհետեւ կը վախնային Յոյներուն վրէժխնդրութենէն, որմէ, սակայն, ի վերջոյ չկրցան խուսափիլ։ Հաստատուելով Թրակիոյ մէջ հոն ենթարկուեցան Յոյներուն յարձակման։ Կը պատմուի թէ Henri de Flandresի Եւրոպա հետեւած էին

---

tury, *Προσφορὰ εἰς Στίλπωνα Π Κυριακίδην*, Thessalonica, 1953, 142 ff.

[211] Gregory the Priest, *op. cit.*, 152 f.

20·000 Հայեր, որոնք իրենց հետ տարած էին իրենց կիներն ու զաւակները: Թէեւ, անտարակոյս, այս թիւը չափազանցուած է, սակայն կը ծառայէ ցոյց տալ թէ Abydosի շուրջը հաստատուած հայկական գաղութը ստուարաթիւ էր[212]:

Հայկական գաղութները իրենց գոյութիւնը պահեցին կայսրութեան եւրոպական նահանգներուն մէջ: Հայերը հոն գացած էին թէ՛ վաճառականութիւն ընելու եւ թէ ուրիշ նպատակներով, բայց գլխաւորաբար բռնի տեղափոխութեանց հետեւանքով, քաղաքականութիւն մը զոր Բիւզանդացիները յաճախ կը կիրարկէին, ինչպէս ընթերցողը գիտէ արդէն: 12րդ դարու բիւզանդացի պատմագիրները յաճախ կը յիշեն Փիլիպպոպոլիսի շուրջ բնակող Հայեր, մասնաւորաբար շեշտելով անոնց անհաւատարմութիւնը կայսրութեան հանդէպ: Թէեւ Բիւզանդացիները կ՚ակնարկէին այդ շրջանին մէջ հաստատուած Պաւղիկեաններուն, որոնց շատերը այն ժամանակ հայկական ծագում չունէին, տարակոյս չկայ թէ Փիլիպպոպոլիսի եւ շրջակայքի բնակչութեան մէջ Հայեր կային[213]: Հայեր կային կայսրութեան

[212] P. Charanis, *On the Ethnic Composition of Byzantine Asia Minor* . . ., 144.

[213] Anna Comnena (Bonn) 2, 298 f.; Nicetas Choniates, *Historia*. Bonn, 1835, 527, 534; Geoffroi de Ville-Hardouin, *La Conquête de Constan-*

մեծ քաղաքներէն շատերուն մէջ: Մանաւորաբար բազմաթիւ էին Կ. Պոլիս[214], ինչպէս նաեւ Թեսաղոնիկէ, ուր գիտենք թէ 13րդ դարուն իրենց եկեղեցին ունէին[215]: Բայց բաց ի այն Հայերէն որ Թեսաղոնիկէ կ'ապրէին, ուրիշներ կը բնակէին մօտակայ գիւղերը: Ծանօթ է որ առնուազն մինչեւ 12րդ դարուն վերջը հայկական գիւղեր կային կայսրութեան եւրոպական մասին մէջ ուրիշ տեղեր ալ: Հայ գիւղ մը կար Rilaի լեռներուն մէջ ոչ հեռու Dupriçaի եւ Samokovի հարաւակողմէն (Պուլկարիա): Ուրիշ մը Bitoljի մօտ, այժմ սերպիական Մակեդոնիոյ հարաւ արեւմտեան անկիւնին մէջ, եւ Հայեր կային Stromitza եւ Moglena քաղաքներուն մէջ եւ Pčinja գետին երկայնքը[216]:

---

*tinople*, edited and translated into modern French by M. Natalis de Wailly, Paris, 1872, 239.

[214] Կ. Պոլսոյ մէջ Հայոց մասին Michael Syrus, *op. cit.*, 3, 185, 186.

[215] Fr. Miklosich et J. Müller, *Acta et Diplomata Graeca*, 3. Vienna, 1865, 89; cf. Charanis, *The Jews in the Byzantine Empire under the First Palaeologi*, Speculum 22, (1947) 76 f.

[216] C. Jireček, *Geschichte der Bulgaren*. Prague 1876, 222: Moglenaի շրջանին մէջ Հայերու ներկայութիւնը դէթ Մանուէլ Կոմնենոսի իշխանութեան օրով (1143—1180) ծանօթ է Մոկլենայի եպիսկոպոս Ս. Հիլարիոնի վարքէն, զոր խմբագրած է 14րդ դարուն Թռնովայի պուլկար պատրիարք Euphemius: Հոն կ'ըսուի թէ Հիլարիոս բուռն հալածանք մը սկսաւ բազմաթիւ հերետիկոսներու՝ Մանիքեցիներու, Պոկոմիլներու ու Հայերու դէմ:

*Թէեւ այս հայկական գաղութներուն ծագման մասին որոշ բան մը կարելի չէ ըսել, շատ հաւանական է որ Վասիլ Բ.ի օրերէն մնացած ըլլան, որովհետեւ այս կայսրը բազմաթիւ Հայեր Մակեդոնիա փոխադրեց, որոնցմէ ոմանք Պուլկարներուն կողմը, անցան*[217] :

Abydos*ի Հայերուն կողմէ ցոյց տրուած ատելութիւնը Յոյներուն դէմ երբ* Henri de Flandres *փորձեց այդ շրջանը գրաւել, միայն այդ Հայերուն յատուկ չէր, այլ կը ցոլացնէ կայսրութեան Հայերուն զգացումները ահասարակ: Այս զգացումներուն արտայայտութեան բազմաթիւ օրինակները ծանօթ են եւ զայն նշած եւ մեկնաբանած են ժամանակակից գիտուններ: «Հայը, կը գրէ Ժ. Լորան, երբեք չկրցաւ կատարելապէս եղբայրանալ Յոյներուն հետ: Կայսրութեան մէջ որքան որ ալ բարձր դիրքի հասած ըլլար,*

---

Jireček, *գրախօսութիւն* G. Weigand*ի* *Vlacho-Meglen, Eine ethnographisch - philologische Untersuchung*, in Archiv f. sl. Philol. 15 (1893), 98.

[217] Prespa *լիճի շրջանակի սահմաններուն մէջ, ուր Յունաստան, Եուկոսլաւիա եւ Ալպանիա կը միանան, կը գտնուին բազմաթիւ բիւզանդական յուշարձաններ որոշապէս հայկական ճարտարապետութեան յատկանիշներով: Նկատելով որ այս յուշարձանները տեղական տիպար մը ունին, անոնց հայկական ճարտարապետական յատկանիշները լաւագոյն կերպով կը բացատրուին ենթադրելով թէ հայ գաղթականներ հաստատուած են: Տես* St. M. Pelekanides, *Βυζαντινὰ καὶ Μεταβυζαντινὰ Μνημεῖα τῆς Πρέσπας* (Thessalonike, 1960, 55 f.)

որքան որ ալ նպաստաւորուած ըլլար, որքան որ ալ անձնուիրութեամբ ծառայած ըլլար բանակին եւ կառավարութեան, Հայը երբեք ուրիշներու նման Բիւզանդացի չեղաւ: Առնուազն իրեն եւ իր անհատական կեանքին համար պահեց իր լեզուն, իր սովորութիւնները, իր բարքերը եւ իր ազգային կրօնքը: Փոխանակ Յունաստանի մէջ հելլենականանալու, հայացուց այն յունական սահմանները ուր բնակութիւն հաստատեց. բիւզանդական կայսրութեան մէջ մնաց օտար տարր մը որ չէր ձուլուած, եւ երբ պատեհ առիթ մը ներկայացաւ վտանգաւոր եղաւ[218]»: Եւ նոյն գիրքին մէջ ուրիշ տեղ մը կը գրէ. «Ահա թէ ինչպէս վտանգի ժամուն, երբ սելճուքեան Թուրքերը Փոքր Ասիոյ բիւզանդական կայսրութիւնը կը քայքայէին, Բիւզանդիոն, փոխանակ պաշտպանութիւն գտնելու այն Հայերէն զոր իր սահմաններուն մէջ հաստատած էր, անոնց թշնամութեան բախեցաւ եւ անոնք նպաստեցին իր անագորոյն թշնամիներուն յաջողութեան[219]»:

Ուրիշ պատմաբան մը որ, ինք ալ, կը շեշտէ Հայերուն անվստահութիւնը եւ ատելութիւնը Բիւզանդիոնի հանդէպ, Ժ. Լորանի յայտարարութիւնը «այլանդակ անհե-

---

[218] J. Laurent, *Les origines médiévales de la question arménienne*, Rev. des Et. Arméniennes 1 (1920) 47.

[219] *Ibid.*, 49.

թեթութիւն» կը յորջորջէ[220]: Runciman Հայերով զբաղած է միայն պատահաբար եւ, հետեւաբար, անոնց մասին իր ուսումնասիրութիւնները նուազ հիմնական են քան Ժ. Լորանի աշխատութիւնները, բայց այս խնդրին մէջ իր պատասխանը անտարակոյս աւելի մօտ է ճշմարտութեան: Ոեւէ տարակոյսի տեղի չկայ թէ Յոյները եւ Հայերը դիրար չէին սիրեր բնաւ եւ թէ համակրութեան այս պակասը երբեմն կը փոխուէր բուռն թշնամութեան եւ կը յանգէր անագորոյն արարքներու, ինչպէս օրինակի համար, Անիի դահապուրկ թագաւորին Գագիկի պարագային, որ Կեսարիոյ յոյն եպիսկոպոսը կալանաւորեց եւ պարկի մը մէջ դնելով իր շունին հետ, իր մարդոց ծեծել տուաւ երկուքն ալ, մինչեւ որ կատղած շունը իր տէրը յօշոտեց[221]: Կասկած չկայ նաեւ թէ, ինչպէս ընթերցողը գիտէ արդէն, եւ հետագային Հայերը ընդունեցան[222], թէ

---

[220] Runciman, *The Emperor Romanus Lecapenus*..., p. 165, n. 2.

[221] Matthew 152—154: Իններորդ դարու քերթուած մը, ուր արտայայտուած է Յոյներուն ատելութիւնը Հայոց դէմ, տես Vryonis, *Byzantium: The Social Basis of Decline in the Eleventh Century*, 173.

[222] F. Macler, *Erzeroum ou topographie de la haute Arménie*, Journ. Asiatique, 11th series, 13 (1919) 223. Macler կը յիշէ 1700 դարու հայ գրողի մը հետեւեալ խօսքը. Հայերը կ'ատէին Յո-

Յոյներուն եւ Հայերուն միջեւ թշնամութիւնը կարեւոր ազդակ մը եղաւ Փոքր Ասիոյ սելչուքեան գրաւման: Բայց ըսել թէ «որքան որ ալ բարձր դիրքի հասած ըլլային կայսրութեան մէջ, որքան որ ալ նպաստաւորուած ըլլային, որքան որ ալ անձնուիրութեամբ ծառայած ըլլային բանակին եւ կառավարական գործերուն մէջ, Հայերը երբեք ուրիշներու նման Բիւզանդացի չեղան» արդարեւ անհեթեթութիւն մը ըսելու հաւասար է, ինչպէս որ բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց դերին մասին ով որ բան մը գիտէ դիւրաւ կրնայ հաստատել:

Մօտաւորապէս հինգ հարիւր տարի, Հայերը կարեւոր դեր մը խաղացին բիւզանդական կայսրութեան քաղաքական, զինուորական եւ վարչական կեանքին մէջ: Անոնք ծառայեցին իբրեւ զինուոր եւ սպայ, իբրեւ վարչական պաշտօնատար եւ կայսր: Այս ժամանակաշրջանին առաջին մասին մէջ, 7րդ եւ 8րդ դարերուն, երբ կայսրութիւնը իր գոյութեան պայքարը կը մղէր, անոնք մեծապէս նպաստեցին անոր թշնամիները վանելու: Բայց մասնաւորապէս մեծ եղաւ անոնց դերը 9րդ եւ 10րդ դարերուն երբ իբրեւ զինուոր եւ սպայ, վարչական պաշտօնատար կամ կայսր, անոնք տիրական դիրք մը գրաւեցին կայսրութեան ընկերային, զի-

---

ները, Յոյները կ՚ատէին Հայերը, որով Աստուած Թուրքերը ղրկեց:

նուրական եւ քաղաքական կեանքին մէջ եւ լայնօրէն ծառայեցին անոր մեծութեան:

Այս ժամանակաշրջանին անոր դերը այնքան գերակշիռ էր որ կարելի է այս երկու դարերուն բիւզանդական կայսրութիւնը Յունահայկական յորջորջել: «Յունական» որովհետեւ, ինչպէս միշտ, իր քաղաքակրթութիւնը յունական էր: «Հայկական» որովհետեւ այն տարրը որ վարեց անոր ճակատագիրը եւ անոր պաշտպանութեան համար հայթայթեց մեծագոյն մասը զինուորներուն մեծամասնութեամբ Հայ էր կամ հայկական ծագում ունէր: Այս դերը, նաեւ համաշխարհային պատմական նշանակութիւն մը ունէր, որովհետեւ այդ շրջանին է որ կայսրութիւնը իր մեծագոյն յաջողութիւնները արձանագրեց, երբ իր բանակները յաղթական էին ամէն ուրեք, իր միխոնարները աւետարանը կը քարոզէին եւ աւետարանին հետ քաղաքակրթութիւն կը տարածէին հարաւ – արեւելեան Սլաւներուն մէջ եւ իր ուսումնականները յարութիւն կու տային յունական հին քաղաքակրթութեան եւ այսպէսով կ՚ապահովէին անոր գրականութեան տեւականացումը: Ասոր մէջ կը կայանայ թերեւս մեծագոյն ծառայութիւնը զոր Հայերը մատուցած են քաղաքակրթութեան:

Բայց թէեւ այս ամէնը ճշմարիտ է, պէտք է չեշտել թէ Բիւզանդիոնի մէջ Հայերը, որ անոր առաջնորդները տուին, բո–

լոռուլին նոյնացած էին անոր քաղաքական եւ զինուորական կեանքին հետ, ինքզինքնին նոյնացուցած էին նաեւ անոր շահերուն հետ եւ որդեգրած՝ անոր մշակութային գլխաւոր յատկանիշները։ Ամփոփելով, ցեղային զանազան ծագումով ուրիշ բազմաթիւ տարրերու, ինչպէս Սարակինոսներու, Սլաւներու եւ Թուրքերու նման, որոնք նոյն բովերէն անցած էին, Բիւզանդացի եղան։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ *

## ՄԱՒՐԻԿ ԿԱՅՍԵՐ ԱԶԳԱՅԻՆ ԾԱԳՈՒՄԻՆ ՄԱՍԻՆ

*Նիկողայոս Ադոնց է որ, անտարակոյս ուրիշ ոեւէ գիտնականէ աւելի, ուսումնասիրած է բիւզանդական կայսրութեան մէջ հայկական տարրին դերը։ Ամենախղճամիտ քննութեամբ քանիցս քննած է թէ՛ յունական եւ թէ հայկական աղբիւրները եւ ջանացած է ցոյց տալ թէ կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին մեծագոյն անձնաւորութիւններէն շատերը իրականութեան մէջ հայ էին կամ հայկական ծագում ունէին*[1]*։ Իր եզրակացութիւններէն ոմանք վերջնականապէս ընդունուած են, իսկ ոմանք դեռ վիճելի կը նկատուին։ Այս վերջին դասակարգին կը պատկանի իր այն տեսակէտը թէ հայկական ծագումով մեծ*

---

* [*Այս յաւելուածական գլուխը հրատարակուած է Byzantionի 35րդ հատորին* (1965) *մէջ, էջ* 412—417։]

[1] *Բիւզանդիոնի մէջ Հայոց դերին մասին Ադոնցի ուսումնասիրութեանց մասնակի ցանկը տես* P. CHARANIS, *The Armenian in the Byzantine Empire* (Lisbon, 1963), 62. [*Այս ուսումնասիրութիւնները ամփոփուած են հատորի մը մէջ, որ Etudes arméno-byzantines տիտղոսով լոյս տեսած է Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութեան Հայկական Մատենաշարին մէջ* (*Լիզպոն*, 1965)։

*անձնաւորութեանց մէջ, որոնք ծառայեցին կայսրութեան, պէտք է դասել նաեւ Մաւրիկ կայսրը[2] :*

*Այս տեսակէտը իրմէ առաջ ալ ուրիշներ պաշտպանած էին, բայց Ադոնց է որ գիտական աշխարհին ուշադրութիւնը հրաւիրած է այս պարագային վրայ : Բնականաբար, իրեն ծանօթ էին թէ՛ հայկական եւ թէ յունական այն աւանդութիւնները, որոնց համաձայն Մաւրիկ Հայ էր, բայց Ադոնց իր ուսումնասիրութեան մասնաւորապէս առարկայ ըրաւ անոր ծննդավայրը :*

*Մաւրիկի ծննդավայրին մասին հակասական աւանդութիւններ կան : Յունական, լատինական, հայկական բազմաթիւ աղբիւրներու համաձայն Մաւրիկ ծնած է Կապադովկիոյ Արաբիսոս (Եարփուզ) քաղաքը : Սակայն կայ նաեւ հայկական աւանդութիւն մը, որուն համաձայն Տարօն ծնած է. իսկ ուրիշ աւանդութեան մը համաձայն՝ Օշական (Էջմիածնի մօտ) : Ըստ Ադոնցի, Տարօնի աւանդութիւնը կրնայ յիշատակ մը ըլլալ Վասիլ Ա.ի ծագումին վերաբերեալ աւանդութեան հետ, բայց Օշականի վերաբերեալը շատ աւելի լուրջ է :*

---

[2] N. ADONTZ, «Les légendes de Maurice et the Constantin V, empereurs de Byzance». *Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales de l'Université Libre de Bruxelles,* II *(Mélanges Bidez,* I), 1934), 2—12.

Միւս կողմէ, Արտաքինոսի վերաբերեալ աւանդութեան աղբիւրները մէկէ աւելի են, որով չի կրնար բոլորովին հերքուիլ: Հետեւաբար, Ադոնց այն եզրակացութեան յանգած էր թէ Մաւրիկի ընտանիքը անծանօթ թուականի մը Օշականէն Արտաքինոս գաղթած էր, ուր ծնած էր Մաւրիկ: Օշականէն եկած ըլլալով, բնականաբար, ընտանիքը հայ էր, բայց շատ կարելի է որ ընտանիքը Արտաքինոսի մէջ ամուսնական խնամութիւններ հաստատած ըլլայ ուրիշ տարրերու հետ: Ադոնց այս կարելութիւնը չի ժխտեր, բայց կը պնդէ Մաւրիկին հօրը հայկական ծագումին վրայ: Ըստ այսմ, Մաւրիկ կէս Հայ էր, բայց կէս Հայ՝ հօրը կողմէ: Henri Grégoire, որ բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց վերաբերեալ խնդիրներուն մէջ սովորաբար կը հետեւէր իր ականաւոր պաշտօնակիցին, ընդունած է այս եզրակացութիւնը[3]:

Սակայն քանի մը տարի ետք Ադոնցին տեսութիւնը առարկայ եղաւ քննադատութեան: Երկար յօդուածով մը, որ կրնայ մենագրութիւն մը համարուիլ, P. Goubert, որ այժմ կրնայ նկատուիլ Մաւրիկի պատմութեան մասնագէտը, բազմաթիւ փաստերով ջանաց ցոյց տալ թէ Ադոնցին տեսու-

[3] H. Grégoire «Sainte Euphémie et l'empereur Maurice», *Le Muséon*, 59 (1949) *(Mélanges L. Th. Lefort)*, 2.

թիւնը ընդունելի չէր[4]: Նախ եւ առաջ ներկայացուց եւ վերլուծեց բազմաթիւ աղբիւրներ, որոնց համաձայն Մաւրիկին ծննդավայրը Արաբիսոն էր, եւ յանգեցաւ այն եզրակացութեան թէ այս աղբիւրներուն վկայութիւնը կարելի չէր թեթեւօրէն ժխտել: Յիշեց Պօղոս Սարկաւագին մէկ վկայութիւնը, որուն համաձայն Մաւրիկ յունական ծագումով առաջին կայսրն էր որ գահ բարձրացած էր: Պօղոս Սարկաւագ, որ Կարոլոսի (Charlemagne) ժամանակակից էր, կրնայ Մաւրիկը Յոյն համարած ըլլալ պարզապէս այն պատճառով որ Փոքր Ասիա ծնած էր եւ կայսերական գահուն վրայ յաջորդած էր շարք մը կայսրերու որոնք ծնած էին Պալքանեան թերակղզիին լատինական շրջաններուն մէջ: Այս պատճառով Goubert այս վկայութեան վրայ շատ չէ ծանրացած: Նոյն իսկ կ՚ընդունի թէ լատին հայր մը եւ յոյն մայր մը կրնայ ունեցած ըլլալ: Շարունակելով քննութիւնը, Goubert կը վերլուծէ Մաւրիկի ընտանիքին զանազան անդամներուն անունները եւ այս անուններուն մէջ ոչ մէկ անուն կը գտնէ որ հայկական ծագում ունենայ: Կը մատնանշէ այն անվստահութիւնը եւ թշնամութիւնը զոր Մաւ–

---

[4] P. GOUBERT, S. J.: «Maurice et l'Arménie. Note sur le lieu d'origine et la famille de l'empereur Maurice», *Echos d'Orient*, 39 (1940), 383—413. Տես նաեւ նոյն հեղինակին *Byzance avant l'Islam*, I (Paris, 1951), 34—41.

րիկ ցոյց տուած է Հայերուն նկատմամբ, եւ դիտել կու տայ թէ Սեբէոս, որ գրեթէ ժամանակակից էր, չէ ըսած թէ Մաւրիկ հայկական ծագում ունէր: Միւս կողմէ, Մաւրիկի իշխանութեան աւելի մերձաւոր ժամանակակից մը, եկեղեցական պատմութեան մը հեղինակ Եւագր, որ, բնականաբար յունարէն գրած է, կ'ըսէ թէ Մաւրիկ անունը եւ Մաւրիկի ծագումը հռոմէական էր: Goubert Եւագրին վկայութիւնը վճռական կը համարի եւ կ'եզրակացնէ թէ Մաւրիկ հայկական ծագում չունէր բնաւ, այլ լատինական ծագում, միայն թէ մայրը կրնար Յոյն եղած ըլլալ[5]:

Երբ բիւզանդական կայսրութեան մէջ Հայոց մասին ուսումնասիրութիւն մը պատրաստեցի, Goubertին եզրակացութեանց հետեւեցայ եւ, հետեւաբար, մերժեցի Ադոնցին տեսակէտը թէ Մաւրիկ հայկական ծագում ունէր[6]: Սակայն, խնդիրը վերստին քննելով, այս տեսակէտէն հրաժարած եմ հիմա: Goubertին փաստերը անառակելի կերպով համոզիչ չեն: Թէ Մաւրիկ Արաբիսոս ծնած էր, ըստ իս, տարակոսի տուարկոյ չի կրնար ըլլալ: Բայց վեցերորդ դարուն մէկը կրնար Արաբիսոս ծնած ըլլալ եւ հայկական ծագում ունենալ, որովհետեւ,

[5] EVAGRIUS, *Ecclesiastical History*, ed. E. BIDEL and L. PARMENTIER (London, 1828), 214.

[6] *Op. cit.* 14.

ինչպէս կ՚ընդունի Goubert ինք ալ, այդ ատեն բազմաթիւ Հայեր կ՚ապրէին այն սահմաններուն մէջ ուր կը գտնուէր Արաբիսոս։ Սեբէոսի լռութիւնը մեծ նշանակութիւն մը չունի, որովհետեւ նոյն հեղինակը չէ ըսած նաեւ թէ Հերակլիոս հայկական ծագում ունէր։ Այն պարագան որ Մաւրիկի ընտանիքին անդամները, ամէնքն ալ յունական կամ հռոմէական անուններ կը կրէին, ընտանիքին ազգային ծագումին տեսակէտով նշանակութենէ զուրկ է, որովհետեւ, ինչպէս ուրիշ տեղ մատնանշած եմ, յունական-հռոմէական Արեւելքին մէջ յունական կամ հռոմէական անունէ մը կարելի չէ հետեւցնել թէ այն որ զայն կը կրէ յունական կամ հռոմէական ծագում ունի[7]։

Տարակոյս է զերծ է թէ Մաւրիկ վստահութիւն չունէր Հայոց վրայ, բայց միեւնոյն ատեն անոնց ռազմական կարողութիւնները իր հիացումին առարկայ էին, ինչ որ կը նշանակէ թէ ինք ծանօթութիւն ունէր անոնց թերութեանց եւ յատկութեանց մասին, որովհետեւ ինք ալ անոնցմէ մէկն էր։ Ամէն պարագայի մէջ, կարելի չէ անտակելիօրէն եզրակացնել թէ Մաւրիկ հայկական ծագում չունէր որովհետեւ Հայերուն նկատմամբ անվստահութիւն եւ թշնամութիւն կը տածէր, ինչպէս կ՚ըսէ Goubert։

Եւագրին վկայութիւնը բնականաբար

[7] *Ibid.* 38.

վճռական կը թուի, բայց այս վճռականութիւնը կրնայ աւելի երեւութական ըլլալ քան իրական: Բիւզանդիոնի մէջ, ուր Հռոմ մեծ վարկ կը վայելէր, բազմաթիւ ընտանիքներ, որոնք կարկառուն դիրքի մը հասած էին, կրնան ջանացած ըլլալ ցոյց տալ թէ իրենք ծագումով առնչակից էին հին քաղաքին հետ: Ասոր ապացոյցներէն մէկը, որ թէեւ յետին դարերուն կը պատկանի, Փոկասներու ընտանիքին ծագումին վերաբերեալ աւանդութիւնն է[8]: Ըստ այս աւանդութեան, տասներորդ դարուն Փոկասները հին ընտանիք մըն էին, որ սերած էր Fabiiներու մեծ տունէն, զոր Մեծն Կոստանդին, ինչպէս իրենք կ'ըսէին, Կոստանդինուպոլիս բերած էր ուրիշ բարձր ընտանիքներու հետ: Այս կարգի առասպելներ կրնան աւելի կանուխ ծագած ըլլալ, եւ սնուցուած՝ այն ընտանիքներուն կողմէ որոնք բարձր դիրքի հասած էին, բայց որոնց ծագումը — ինչպէս տասներորդ դարուն Փոկասներունը — աննշան էր: Արդարեւ, շատ հաւանական է որ Եւագրի այն տողերը, որ կը վերաբերին Մաւրիկին ազ-

[8] ATTALIATES, Historia (Bonn 1853), 217 ff. Cf. CHARANIS, *op. cit.*, 39. Ուրիշ օրինակներ՝ տես F. DÖLGER, «Rom in der Gedankenwelt der Byzantiner», *Zeitschrift für Kirchengeschichte*, 56 (1937), 9, n. 16. Վեր հրատարակուած է F. DÖLGER, Byzanz und die europäische Staatswelt (1953), 70—115 ի մէջ:

գային ծագումին, այս տեսակ առասպելի մը գոյութիւնը ցոլացնեն: Մաւրիկի ընտանիքը թերեւս բոլորովին անծանօթ չէր իր ծագումով — մայրը եղբայր մը ունէր որ Արաբիստանի եպիսկոպոս եղած է — բայց ինչ որ ընտանիքին համբաւ շնորհած է նոյն ինքն Մաւրիկի ապարէզն է: Կոստանդինուպոլիսի հիմնարկութենէն ի վեր, Մաւրիկ, բաց ի Զենոնէն, — եւ Զենոն մասնաւորապէս ականաւոր չէ եղած — Մաւրիկ միակ կայսրն էր որ Փոքր Ասիայէն եկած էր: Բոլոր միւս կայսրերը Պալքանեան թերակղզիին լատինացած սահմաններէն եկած էին, Պաննոնիայէն, եւ Սպանիայէն: Այս պարագան կրնայ Մաւրիկին անմիջական ընտանիքը մղած ըլլալ տարաձայնել թէ իրենք ծագումով Հռոմէն էին: Goubertին այն փաստը թէ Մաւրիկին անմիջական ընտանիքին լատինաւէր ձգտումները ուրիշ փաստ մըն են թէ անոնք հռոմէական ծագում ունէին, կրնայ հակառակը ապացուցանել:

Բայց Մաւրիկին հռոմէական ծագումին դէմ այստեղ պարզուած փաստերէն աւելի վճռական է յունական այն աւանդութիւնը թէ Մաւրիկ Հայ էր: Goubertին նշած աղբիւրներուն վրայ կրնամ աւելցնել ուրիշ մը, Ֆրանց Քիւմոնի հրատարակած անանուն Քրոնիկը, որ նշանաւոր եղաւ, որովհետեւ Կոստանդինուպոլիսի դէմ առաջին յարձակման ճիշտ թուականը կը պարունակէր [9]:

9 Franz CUMONT, *Anecdota Bruxellensis,*

Յունական այն աղբիւրները որ այս աւանդութիւնը պահած են, բնականաբար ուշ ատեն գրուած են, Մաւրիկին իշխանութենէն դարեր ետք, բայց անոնց աղբիւրը պէտք է եղած ըլլայ հնագոյն աղբիւր մը որ գոյութիւն չունի հիմա։ Ամէն պարագայի մէջ, ինչ որ ալ եղած ըլլայ այս աղբիւրը, այս աւանդութեան ծագումը բացատրութեան կը կարօտի։ Goubert փորձած է զայն բացատրել, բայց իր բացատրութիւնը անգոհացուցիչ կը թուի։ Ինչ որ կ'ըսէ հետեւեալն է. Մաւրիկ Արաբիսոս ծնած էր. Արաբիսոս կը գտնուի Կապպադովկիոյ այն մասին մէջ որ կը կոչուէր Երկրորդ Հայք եւ, յետոյ, Առաջին Հայք։ Այսպէս, Մաւրիկ որ Առաջին Հայքի մէջ ծնած էր — արուեստականօրէն ստեղծուած վարչական միութիւն մը — կրնայ Հայ կոչուած ըլլալ։ Այս բացատրութիւնը շատ հարեւանցի է։ Բիւզանդական քրոնիկագիրները յաճախ սխալած են, յաճախ շփոթած են իրենց նիւթերը, եւ յաճախ Կապպադովկիացի, Փռիւգիացի, Միսիացի, եւն. կոչած են ժողովուրդներ, որոնք շատոնց դադրած էին իրենց ազգային ինքնութիւնը պահելէ. եւ այս անուններով չէին կրնար կոչուիլ։ Բայց պարագան բոլորովին տարբեր էր երբ խնդիրը Հայոց վրայ էր։ Հայերը կենսունակ, կենդանի ազ-

1. *Chroniques byzantines du manuscrit 11376* (Gand, 1894), 29: *Μαυρίκιος . . . τῷ γένει Ἀρμένιος.*

գային խմբաւորում մըն էին, չատ ծանօթ, որոնց հետ Բիւզանդիոն կարեւոր յարաբերութիւններ ունէր թէ՛ արտաքնապէս եւ թէ ներքնապէս: Եւ այսպէս, երբ բիւզանդացի քրոնիկագիրները մէկը Հայ կը կոչեն, թեթեւօրէն ժխտելի պարագայ մը չէ, մանաւանդ երբ կը հաստատուի հայկական գրական աւանդութեամբ ալ: Goubert մերժելով թէ՛ յունական եւ թէ հայկական աղբիւրները որոնք Մաւրիկին կը վերագրեն հայկական ծագում մը, կը պարզէ ինչ որ ինք կը նկատէ ակներեւ ճշմարտութիւն մը՝ հիմնուած հաստատ կռուաններու վրայ: Բայց այս ակներեւ ճշմարտութիւնը կրնայ, ինչպէս այստեղ ներկայացուեցաւ, առարկայ ըլլալ մեկնութեան մը որ զայն չի հաստատեր: Ուրիշ խօսքով, վճռական չէ ընդդէմ այն փաստերուն զոր ինք կը մերժէ:

Հետեւաբար պէտք է ընդունիլ թէ Մաւրիկ առաջին բիւզանդական կայսրն է կայսրերու շարքի մը, որոնցմէ ոմանք կայսրութեան քաղաքական եւ զինուորական կեանքին փայլ տուին եւ որոնք հայկական ծագում ունէին: Սակայն, ընդունելով հանդերձ այս պարագան, պէտք չէ բնաւ մոռնալ թէ Բիւզանդիոնի մէջ անձի մը ազգային ծագումը նշանակութենէ զուրկ էր, պայմանաւ որ բիւզանդական մշակոյթը իւրացնէր: Ուրիշ խօսքով, պայմանաւ որ Յոյն ըլլար — ոչ, բնականաբար, դասական շրջա-

նին Յոյներուն նման Յոյն մը, բայց այսու հանդերձ Յոյն մը· մէկը որ եկած էր մասնակից ըլլալու համար յունական մշակոյթին, այն մշակոյթին որ կազմուած էր դարերու հոլովոյթի ընթացքին[10]։

Եւ, ի վերջոյ, այսպէս չէ՞ որ Խոսկրոէս սահմանած է Յոյնը։



10 P. CHARANIS, *op. cit.*, 57.